# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ԽՈՍՏՈՒՄԸ

*Ես՝ Սովետական Միության պատանի պիոներս, իմ ընկերների առջև հանդիսավոր կերպով խոստանում եմ.*

*ջերմորեն սիրել իմ Սովետական Հայրենիքը, ապրել, սովորել և պայքարել այնպես, ինչպես ավանդել է մեծ Լենինը, ինչպես սովորեցնում է Կոմունիստական պարտիան։*





## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՕՐԵՆՔՆԵՐԸ

Պիոները սիրում է իր Հայրենիքը, Սովետական Միության Կոմունիստական պարտիային։ Նա պատրաստվում է ընդունվելու ՀամԼԿԵՄ շարքերը։

Պիոները մեծարում է նրանց հիշատակը, ովքեր իրենց կյանքը նվիրաբերել են Սովետական Հայրենիքի ազատության և բարգավաճման պայքարին։

Պիոները աշխարհի բոլոր երկրների երեխաների բարեկամն է։

Պիոները լավ է սովորում, կարգապահ է և քաղաքավարի։

Պիոները սիրում է աշխատել և պահպանում է ժողովրդական բարիքը։

Պիոները լավ ընկեր է, հոգ է տանում փոքրերի մասին, օգնում է մեծերին։

Պիոները համարձակ է և չի վախենում դժվարություններից։

Պիոները ասում է ճշմարտությունը, թանկ է գնահատում իր ջոկատի պատիվը։

Պիոները կոփում է իրեն, ամեն օր լիցքային վարժություններ է կատարում։

Պիոները սիրում է բնությունը, նա կանաչ տնկիների, օգտակար թռչունների և կենդանիների պաշտպանն է։

Պիոները օրինակ է բոլոր երեխաների համար։



ՀԼԿՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ




№ 2 1958 թ.
ՓԵՏՐՎԱՐ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
29-ՐԴ ՏԱՐԻ




ՀԱԿՈԲ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Նկ. Ֆ. ԳՅՈՒԼԱՆՅԱՆԻ

Ընդարձակ դահլիճի մեջտեղում՝ ձյան փաթիլներով պարուրված, շողշողում էր բազմապիսի զարդերի մեջ թաղված բարձր տոնածառը:

Գեղեցիկ ու գունեղ խաղալիքները, անուշահոտ մրգերը այլևս չէին գրավում հինգերորդ դասարանի աշակերտներին: Նրանց չէին գրավում նաև տոնածառի մոտ կանգնած, ճերմակ քուրքը հագին, բարի ժպիտը դեմքին, երկարամորուս ձմեռ պապին, բազմապիսի խաղալիքները՝ սահնակներով սահող երեխաները, ձնագնդի խաղացողները, ձյունապատ տնակն ու այդ տնակի տանիքին կանգնած աքաղաղը:

Նրանք կլանված հետաքրքրությամբ լսում էին թիկնեղ գնդապետին, որի հետ նամակագրական կապեր էին պահպանում: Գնդապետ քեռին պատասխան նամակներում ամեն անգամ իր փոքրիկ բարեկամներին գրում էր, որ ինքը շուտով կգա նրանց մոտ: Եվ ահա նա եկել էր:

— Մեր գունդը,—սկսեց գնդապետը,—Հայրենական պատերազմի օրերին վերցրել էր Գորկի քաղաքի Ջապաևի անվան դպրոցի շեֆությունը: Մի անգամ, Նոր տարվա նախօրյակին, մենք նրանցից նվեր ստացանք: Այդ այն պահին էր, երբ մենք պատրաստվում էինք հարձակման: Ժամանակը շատ քիչ էր: Սակայն ես բացեցի նվերների արկղը և զարմացա: Նրա միջից դուրս եկան մի գեղեցիկ ձմեռ պապի, տոնածառի խաղալիքներ և քաղցրեղեն:

— Ի՞նչ անենք այս խաղալիքները,—տարակուսանքով ասաց շտաբի պետը,—երեխաներ էլ չկան, որ նրանց համար տոնածառ սարքենք:

— Պահեցեք, Աֆանասի Պետրովիչ,—ասացի ես,—այդ նվերները թանկ են, չէ՞ որ ուղարկել են մեր երեխաները:

Աֆանասի Պետրովիչը դրանք խնամքով դասավորեց արկղի մեջ ու պահեց.

...Մոտենում էր գրոհի պահը, ես սպասում էի հետախույզներին: Ահա այդ ժամանակ էր, որ ինձ մոտեցավ դասակի հրամանատար լեյտենանտ Սարգսյանը:

— Տեղեկություններ կա՞ն,—հարցրի նրան:

Լեյտենանտը զեկուցեց.

— Մեր հետախույզներն իրենց հետ մի տղա են բերել: Տղան այն կողմից անցել է մեզ մոտ:

— Ներս բերեք:

Բանակայինի ուղեկցությամբ ներս մտավ կայտառ, բայց նիհար դեմքով, հազիվ տասը-տասներկու տարեկան մի տղա: Նա ուշադիր նայեց ինձ: Աչքերը բոցկլտում էին:

— Ընկեր պետ,—ասաց նա,—ինձ մեր երեխաներն են ուղարկել ձեզ մոտ, նրանք խնդրում են, որ թշնամուն շուտ քշեք գյուղից:

— Ինչո՞ւ, տղաս:

— Չէ՞ որ Նոր տարի է գալիս. երեխաները ու-

զում են տոնածառ սարքել, իսկ թշնամին չի թողնում: Մենք սպասում ենք ձեզ, կհրավիրենք տոնածառին, ընկեր պետ, Կլավայի, Սաշայի, Պետյայի, Ֆեդյայի, բոլորի, բոլորի անունից խնդրում եմ... երկու տարի է ինչ տոնածառ չենք ունեցել, սպասել ենք ձեր գալուն,—և փոքրիկի դեմքը շառագունեց:— Գիտե՞ք, ես կարող եմ ձեզ պատմել թշնամու ուժերի տեղադրման մասին...

Եվ ամեն ինչ պատմեց:

Գիշերը սկսեց գործել մեր հրետանին: Վաղ առավոտյան գունդը գրոհի անցավ:

Թշնամին նահանջում էր:

Մեր ժամանակավոր շտաբը տեղավորվեց գրաված գյուղի դպրոցի ուսուցչանոցում:



եղանակը արևոտ էր, օրը՝ ջինջ ու թարմ:

Աֆանասի Պետրովիչը դպրոցի դասարաններից մեկում ինչ-որ գործով էր զբաղված: Ես տարվել էի տեղագրական քարտեզը զննելով:

Քիչ անց դուռը բացվեց, ու ներս մտավ Աֆանասի Պետրովիչը: Նա ինձ հրավիրեց հարևան սենյակը:

Երբ սենյակ մտանք, առաջին բանը, որ աչքիս ընկավ, Ձմեռ պապին էր. ժպիտը դեմքին նա կանգնել էր ձյան մեջ, տոնածառի ճյուղերի տակ, բազմազան խաղալիքներ շալակին:

Տոնածառի շուրջը կանգնած էին նոր ազատագրված գյուղի փոքրիկ երեխաները և Սերյոժան:

Նրանք երգեր երգեցին ու սկսեցին ուրախ շուրջպարը: Որքա՜ն գեղեցիկ էր նոր տարվա առաջին օրը այդ ազատագրված գյուղում: Ինչքա՜ն հմայիչ էին երեխաների ուղարկած նվերները:

* * *

Գնդապետը լռեց, իսկ քիչ հետո ներս մտավ համհարզը: Նա շորի մեջ փաթաթած ինչ-որ բան էր գրկել:

Երբ համհարզը այն դրեց հատակին ու վերցրեց նրա վրայի շորը, երեխաները զարմացած բացականչեցին.

— Ինչ լա՜վն է...

Սենյակի հատակին դանդաղ ու ծանր սողում էր ամրակուռ մի տանկ: Տանկի աշտարակի միջին անցքից՝ ժպիտը դեմքին, երեխաներին էր նայում տանկիստը: Տանկի կողի վրա գեղեցիկ տառերով գրված էր.

«Շնորհավոր ձեր նոր տարին»:

Դա գնդապետի նվերն էր:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Կռիվներում բոլո՜ր, բոլոր
Տարել ես դու հաղթանակ,
Խաղաղության պաշտպան հզոր,
Սովետական մեծ Բանակ:

Կարմիր արև ես մեզ բերել
Ու ազատ կյանք փառավոր,
Հայրենիքս դու ես փրկել,
Կործանումից ահավոր:

Մեծ եղբայրս է հերոս դարձել
Քո հաղթական շարքերում,
Ֆաշիստներին ջարդել-հնձել
Հայրենական մարտերում:

Երկիրն է մեր դարձել խնդուն
Երջանկության մի պարտեզ.
Սահմաններին նրա՝ արթուն,
Կանգնել ես դու բերդի պես:

Խաղաղության գրկում անուշ
Ծաղկում ենք մենք ապահով
Ու կերտում ենք սիրով անհուն
Գալիքը մեր լուսաշող:




ՎԱՐԴԱՆ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Ահագին քարը լեռան լանջից աղմկելով գլորվեց դեպի ձորը:

Կիսով չափ բարձրացա թփից ու նայեցի դեպի լեռնալանջը: «Ինչու՞ գլորվեց», անցավ իմ մտքով:

Լուսնի աղոտ լույսի տակ հազիվ նշմարվում էին լեռնալանջի ահագին քարերը: Ձորում երկու աշխարհների սահմանագիծը կազմող գետը վշշալով լիզում էր քարոտ ափերը:

Կասկածն սկսեց տանջել ինձ: «Ինչու՞ գլորվեց քարը»: Աչքինչ չհասկացավ նաև Նորդը, որ ականջները սրած նայում էր մեկ դեպի լեռնալանջը, մեկ դեպի ինձ: Այդ հեռավորության վրա գիշերով անկարելի է որևէ բան նկատել: Ձեռքի մի շարժումով շանը նշան արեցի ու սկսեցի սողալ դեպի հովիտը: Ինձ հետ կողք-կողքի սողում էր Նորդը: Մեզնից ոչ հեռու գտնվող թփից դուրս եկավ սահմանապահ Զուրկինը: Չոփափի բարձր լեռները ստվեր էին գցել հովտի վրա, որից հովիտն ընկղմվել էր խավարի մեջ, իսկ սարալանջը, որտեղով սողում էինք մենք, լուսավորում էր լուսինը:

Հովիտ հասնելով, թփերի կիսաօղակում նստեցի մի քարի և այդպես սկսեցի դիտել: Ինձ մոտ չոքած Նորդը ականջները սրած, խուզարկող աչքերով նայում էր դեպի խիտ թփուտները: Զուրկինը, հասնելով մեզ՝ մնաց պառկած: Դարձյալ լռություն էր...

«Երևի քարայծը գլորեց», անցավ մտքովս և Զուրկինին ձեռքով բարձրանալու նշան արեցի:

Հենց այդ պահին Նորդն անհանգստության նշաններ ցույց տվեց և ինձ ձգեց դեպի թփերը: Զգուշելով նրան, քարից բարձրացա և քողարկվեցի ձախակողմյան թփերում: Զուրկինը հետևեց ինձ:

Թփերի խշշոց լսվեց:

— Ուրեմն «ձուկ» ենք որսում,— կամաց շշնջացի Զուրկինի ականջին:

Մենք դիրքավորվեցինք: Մեր արանքում պառկել էր Նորդը՝ թռիչքի պատրաստ, դունչը թաթերին սեղմած: Քիչ անց թփուտների ծայրին երևացին մարդկային կերպարանքներ: Նրանք ուղիղ մեր կողմն էին գալիս:

Ես մտքումս սկսեցի հաշվել.

— Մեկ, երկու, երեք...

Բայց այդ պահին նրանց քանակը չէր զբաղեցնում իմ միտքը, ես մտածում էի Նորդի մասին. արժե՞ր արդյոք, որ նա նետվեր դեպի եկողները: Իհարկե, ո՛չ, նա չէր կարող բոլորի հետ հաշիվ տեսնել: Ես կամաց քաշեցի կապը, և Նորդը սողալով մոտեցավ ինձ:

Պայուսակից հանեցի ձեռքի նռնակները, հենց որ սահման խախտողներից առաջինը հասավ այն քարին, որի վրա քիչ առաջ ես էի նստած, ամբողջ թափով նռնակը նետեցի առաջ: Նույնը կատարեց Զուրկինը: Նռնակները պայթեցին: Երկու մարդ մի պահ օդում օրորվելով ցած ընկան: Մնացածներից մեկը թաքնվեց քարի ետևը, իսկ մյուսները նետվեցին թփերի մեջ: Մենք հրացաններից կրակ բացեցինք նրանց վրա:

Քարի ետևից տեղաց հակառակորդի կրակի առաջին հերթը, իսկ քիչ հետո թփուտների միջից հաջորդեց երկրորդը, երրորդը, և այսպես մարտը տաքացավ



Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



Նորդը վնգստում էր անհամբերությունից, բայց ես նրան թույլ չէի տալիս առաջ շարժվել։

Գործի դրեցի երկրորդ նռնակը, որպեսզի լռեցնեմ քարի ետևից տեղացող կրակը։ Այդ կրակը դժվարացնում էր մեր հետագա գործողությունները և սահման խախտողներին ազատ հնարավորություն էր տալիս շրջանցելու մեզ։ Նռնակը պայթեց, բայց քարի ետևից դարձյալ սկսեց կրակ տեղալ։

Մենք դադարեցրինք կրակը։ Քարի ետևում պաշտպանված մարդը փորձեց սողալ դեպի թփերը։ Բայց մեր համազարկը ստիպեց նրան նորից թաքնվել քարի ետևը։ Զգալով, որ զրկված է նահանջելու հնարավորությունից, նա սկսեց սաստիկ կրակ թափել։ Մենք առանց նրան պատասխանելու հսկում էինք չորս կողմը։

Հանկարծ հառաչանքի նման մի բան դուրս թռավ Զուրկինի բերանից.

— Արդեն։

— Ի՞նչ,—ես ցնցվեցի ամբողջ էությամբ ու նետվեցի դեպի նա,—Վոլո՛դյա...

Բայց Վոլոդյան չպատասխանեց։ Ես ձախ ձեռքով գրկեցի նրան և աջ ձեռքի ափով շոշափեցի նրա մարմինը։ Զուրկինի ձախ ուսից հոսում էր տաք արյունը։ Ես ամբողջ երկարությամբ պատռեցի նրա վերնաշապիկն ու սկսեցի արագ կապել վերքը։

Հենց այդ պահին մեր ետևի թփերի արանքից սահմանախախտը զենքը բարձրացնելով ուղղեց դեպի մեզ։ Նորդը, որ այդ րոպեին իմ հսկողությունից դուրս էր մնացել, մի թռիչք գործեց ու ժանիքները խրեց նրա աջ բազկի մեջ։ Դրան հաջորդեց մի սուր ճիչ, և ատրճանակը ցած ընկավ հակառակորդի թուլացած ձեռքից։ Բայց հանկարծ մի երկրորդ զենքից կրակ տեղաց, և Նորդը կաղկանձեց՝ առանց ժանիքներն ազատելու։ Ես նույնպես քաշեցի ձգանը, բայց կրակ չստացվեց. պահեստատուփն արդեն դատարկ էր։ Արագ հանեցի մի փամփշտակալ ու լցրեցի հրացանը։ Զուրկինը փորձում էր կրակել քարի ետևից դեպի մեր կողմը սողացող սահմանախախտի վրա, բայց ձախ ձեռքը չէր գործում, իսկ աջը արնահոսության հետևանքով այնքան էր թուլացել, որ չէր կարողանում հրացանին ուղղություն տալ։ Եկողը բարձրացրեց զենքը, և մի պահ թվաց, թե ամեն ինչ վերջացած է...

Բայց այդ միջոցին լսվեց մի կրակոց, և հրթիռի պայծառ լույսը կախվեց հովտի վրա...

Բլրից դեպի հովիտն էր իջնում մեր հեծյալների մարտախումբը։

Մարտը երկար չտևեց։ Հինգ րոպե անց ինձ և Զուրկինին շրջապատել էին մեր զինվորները։

Ուղեկալի պետը շնորհավորում էր մեզ, ոմանք վիրավոր Զուրկինին էին քաջալերում և հարցեր տալիս ինձ։ Բայց այդ պահին ոչինչ չէր մխիթարում ինձ, դիմացս անշունչ ընկած էր Նորդը՝ իմ մարտական ընկերը, որի հետ չորս տարի ես տարել էի սահմանային ծառայության բոլոր դժվարությունները։ Նրա սուր հոտառությունը ինձ համար բացում էր խավար գիշերների անթափանցելի գաղտնիքները...



1.



Փետրվարյան ցրտաշունչ քամին ոռնում էր ծխնելույզներում, կղմինդրե տանիքների տակ, ջրհորդանների մեջ։ Սաստիկ ցրտից ձյան խոշոր փաթիլները փոքրացել, դարձել էին կարկտի նման կարծր ու կլոր, որոնց կատաղի քամին քշում, հարվածում էր լուսամուտների եղյամապատ ապակիներին, աններդաշնակ և սարսռեցնող մի խըշշոց տարածելով ամենուրեք։

Անոնն կանգնել էր լուսամուտի առջև և մտասույզ դիտում էր դրսի անցուդարձը։

Մարդիկ քայլում էին զգույշ, ոտքերը սառած գետնին քսացնելով, քայլում էին առանց շուրջը նայելու, ցրտից կուչ եկած դեմքերը վերարկուների օձիքների մեջ թաղած։

Փողոցով անցնում էր բեռներով բարձված սայլը։ Հանկարծ ձին, ինչ-որ բանից վախեցած, ծառս եղավ ու սայթաքեց։ Սայլապանը շտապ ցած իջավ սայլից։ Նա մտրակը օդում թափահարեց և փորձեց ահաբեկելով ոտքի կանգնեցնել նրան։ Թշվառ կենդանին հուսահատ փնչում էր, ռունգներից գոլորշու քուլաներ էր թողնում և թափահարում առջևի ոտքերը։ Երկար չարչարանքից հետո ձին վերջապես ոտքի կանգնեց և ամբողջ մարմնի մկանները լարելով, շարժվեց առաջ՝ ետևից քարշ տալով ծանր սայլը։



Ա. ՇԱՀԻՆՅԱՆ

Ահա մոտակա նրբանցքից, ճմուշկների վրա սահելով, դուրս եկավ մի տղա՝ հաստ երկաթալարը ձեռքին, որի ծայրը փոքր-ինչ կեռ էր։

Տղան կանգնեց փողոցի մեջտեղում ու սկսեց հայացքով ուղեկցել սրընթաց անցնող ավտոմեքենաներին։ Երբ տղան փորձում էր ձեռքի կեռ երկաթալարով կառչել արագ անցնող բեռնատար մեքենայի ետևից, անցորդներից մեկը կանգնեցրեց նրան։ Ձեռքը բարկացած թափահարելով, անցորդը ինչ-որ բան ասաց տղային, բայց վերջինս արհամարհական մի շարժում արեց ու հեռացավ։

Անոնն, տեսնելով փողոցի մեջտեղով ճմշկող տղային, խոժոռեց դեմքը ու բարկությունից սկսեց անհանգիստ շարժումներ անել։

Ինչպե՞ս պատահեց... Ինչո՞ւ ինքը այդ օրը հաշվի չառավ ընկերների խորհուրդները, չհայտնեց տանեցիներին ու Վաչեի հետ գաղտագողի դուրս եկավ տնից և...

Նույնիսկ իրենց հարևան Նոյեմզար տատի խոսքերն էլ բանի տեղ չդրեց, երբ բակից դուրս գալիս, ասաց նրան.

— Էդ սատանի կոշիկներով փողոց մի դուրս արի, որդի, Ով գիտի, ինչ փորձանք գա գլխիդ...

Եվ ահա Նոյեմզար տատի գուշակությունը կատարվեց... Բայց այդ ամենը այնպես անակնկալ, այնպես միանգամից եղավ, որ մինչև այսօր էլ նա չի կարողանում վերհիշել, թե ինչից սկսվեց։

Անոնն սթափվեց և հեռացավ լուսամուտից։ Նա հենակների օգնությամբ, դանդաղ քայլերով գնաց կից սենյակը, ուր բազմոցի վրա նստել էր մայրը և Անոնի պատռված շալվարն էր կարում։ Ամեն մի ասեղ խփելիս նա վշտացած հառաչում էր ու գլուխը հանդիմանորեն շարժում։

Անոնն մոտեցավ բազմոցին, մի կողմ դրեց հենակները ու տեղավորվելով մոր կողքին, աղերսող ձայնով ասաց.

— Ախր, դու իզուր ես վշտանում, մամ... Ոտքս, տեսնում ես, լավացել է, էլ առաջվա նման չի ցավում,— և իր ասածը հաստատելու համար, նա ընդապատ աջ ոտքի կրունկով ուժեղ թփփացրեց հատակին, բայց անտանելի ցավից անմիջապես գունատվեց։ Ինչ լավ էր, որ մայրը չնկատեց այդ...

— Անոն, զավակս,— ընդհատելով աշխատանքը, ասաց մայրը հուզված,— ես ոտքիդ համար չէ, որ այսքան վշտանում եմ։ Ինձ մտահոգում ու տանջում է մի ուրիշ, ավելի կարևոր բան. այն, որ քո այդ ցուցամոլության պատճառով դեռ ինչքա՜ն փորձանքներ կբերես գլխիդ։ Դու միշտ ուզում ես այնպիսի բան անել, որից մեծ աղմուկ բարձրանա, ընկերներդ լսեն ու զարմացած խոսեն քո «հերոսության» մասին։

Դուռը բախեցին։ Մայրը ընդհատեց խոսակցությունը և գնաց դուռը բանալու։

— Զարուհի մորաքույր, կարելի՞ է,— լսվեց միջանցքից ծանոթ մի ձայն։
— Կարելի է, կարելի է... Ներս եկեք։
Առնոն շտապ վեր կացավ բազմոցի վրայից։
Ներս մտան նրա դասընկերները՝ Մուկուչը, Գագիկն ու Համոն։
— Ա՛յ թե սառել եք, հա՞։ Վրաններից ցուրտ է փչում... Դե, հանվեք, տղաներ։ Ես ձեզ հիմա տաք թեյ կբերեմ։
— Չէ՛, չէ՛, Զարուհի մորաքույր, մենք հենց էնպես... Ասենք՝ իսկի էլ հենց էնպես չէ,— և Մուկուչը ինչ-որ բան հիշելով, սկսեց պրպտել գրպանները։
Գագիկն ու Համոն մոտեցան Առնոյին։
— Հը՛, շա՞տ է ցավում...
— Էնքան էլ չէ, ասենք՝ բոլորովին լավացել է,— պատասխանեց Առնոն։
— Բա ինչո՞ւ եք կաղել,— հարցրեց Գագիկը։
Մինչ տղաները հարց ու փորձ էին անում Առնոյին, Մուկուչը ձեռք ու ոտք ընկած, դեռ շարունակում էր գրպանների հետախուզությունը։
— Ինչ է, բա՞ն ես կորցրել, տղաս,— հարցրեց Առնոյի մայրը։
— Չէ, չեմ կորցրել, մենակ թե...— մտասույզ պատասխանեց Մուկուչը։ Երբ նա համոզվեց, որ զանազան անպետք իրերով տռզած գրպանները ոչնչով չեն կարող ուրախացնել իրեն, հուսահատ բացականչեց.
— Թյո՛ւ, բա էդ ի՞նչ եղավ... Գուցե դուք գիտեք, տղերք։ Ախր ես վերարկուիս ծոցագրպանն էի դրել. էդ ո՞ւր կորավ, հը՞։
— Ճզմած, պայուսակիդ մեջ նայիր,— վրդովված ասաց Համոն։
Մուկուչը շտապով բաց արեց պայուսակը։
— Վա՜յ, այստեղ է,— ասաց նա և պայուսակից երկու տակ ծալված մի թերթիկ հանեց ու մեկնեց Առնոյի մորը։
Դպրոցի դիրեկցիան ծնողներին հրավիրում էր կարևոր խորհրդակցության, որից հետո, դպրոցի բակում կայանալու էր աշակերտների ուժերով կազմակերպված մի շատ հետաքրքիր ցուցադրում՝ «Թատրոնը սառույցի վրա»։
— Առնոն էլ թող գա,— ասաց Գագիկը՝ թեթևակի հայացք գցելով ընկերոջ՝ հենակների վրա։
— Տղաներ, բժիշկը Առնոյին արգելել է մի քանի օր տնից դուրս գալ...
— Ոչի՛նչ, Զարուհի մորաքույր,— աղերսող ձայնով ասաց Մուկուչը,— թող նա էլ գա։ Ընկեր Մաբությանն ասաց, որ Առնոյի ներկայությունը շատ կարևոր է։

Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ



Մայրը նայեց տղաներին, նայեց Առնոյին և նորից կարդաց հրավիրատոմսի տակ գրված հայտարարությունը՝ «Թատրոնը սառույցի վրա»։

2.

Այս նախաձեռնությունը մտահղացավ այն օրերին, երբ Առնոյի հետ տեղի ունեցած դժբախտ դեպքի լուրը տարածվեց ամբողջ դպրոցում։ Իսկ դա պատահեց այսպես...

Ձմեռային արձակուրդները դեռ չէին սկսվել։ Մի քանի օր սաստիկ ցուրտ էր անում։ Նույնիսկ Անոյենց տան առջևով հոսող փոքրիկ գետակը ամբողջովին սառցապատվեց։ Մարդիկ իրար հանդիպելիս գլուխները տարուբերում էին ու ասում. «Էս տարի ա՛յ թե ձմեռ է անելու, հա՜...»։

Եվ ահա եկավ առաջին ձյունը։

Անոյի աչքերը շողացին հրճվանքից, իսկ սիրտը հուզմունքից թփրտաց կրծքի տակ։ Չէ՞ որ նա երազել էր այդ օրը։ Ամեն առավոտ, քնից արթնանալուն պես, Անոն մոտենում էր լուսամուտին և անհամբերությամբ դուրս էր նայում՝ տեսնելու՝ գետինը սպիտակել է, թե՝ ոչ։ Նույնիսկ մի անգամ երազում տեսավ, թե ինչպես ձյունը եկել, ծածկել էր ամեն ինչ։ Իսկ երբ արթնացավ ու դուրս նայեց, տեսավ, որ գետինը առաջվա նման սև էր։ Բայց այս անգամ արդեն երազ չէր։ Նրա ականջին պարզ հասավ հարևան բակում ապրող մարդկանց աղմուկն ու աղաղակը, որոնք վաղ արթնացել, տանիքներն էին մաքրում։

Ա՛յ, թե ձյուն էր եկել...

Հենց այդ օրն էլ, դասերից հետո Անոն հանդիսավոր ձևով կոտրեց գիպսից ձուլված սնդուկ-դրամապահոցը, որտեղ ամբողջ մի տարվա ընթացքում նրան հաջողվել էր տասնվեց ռուբլի քառասուն ութ կոպեկ մանր դրամ հավաքել, Ներքնահարկից հանեց դեռ անցյալ տարվանից մնացած երկար ճտկավոր կոշիկները, վրաներից պոկեց ժանգոտված չմուշկները և պատրաստվեց վաղուց փայփայած երազանքն իրականացնելու։

— Դու, ավելի լավ է, մի ուրիշ բան գնիր,— ասաց մայրը,— իսկ չմուշկներ արդեն ունես։

— Դե, սրանք ի՞նչ չմուշկներ են որ...

Որքան էլ մայրը փորձում էր համոզել Անոյին, որ նա հրաժարվեր տունը չմուշկների պահեստ դարձնելու մտադրությունից, այնուամենայնիվ նա անդրդվելի մնաց։

Եվ ահա Անոն իր նոր չմուշկներով սահում է դպրոց տանող ճանապարհով։ Սահում է հպարտ, կուրծքը դուրս ցցած։ Նա ճարպիկ ու ճկուն շարժումներով մեկ կանգնում էր մի ոտքի, մեկ էլ մյուս ոտքի վրա, ապա ամբողջ մարմնով առաջ թեքված, ձեռքերը հորիզոնական պարզած՝ բազու նման սլանում էր սառցակալած մայթի վրայով։

Դպրոց շտապող փոքրիկ աղջիկները կանգնում էին ու հիացմունքով նայում Անոյի ետևից։ Իսկ հասակակից տղաները, բերանները լայն բացած՝ նախանձոտ հայացքով հետևում էին նրա կատարած ամեն մի շարժումին։

Եվ Անոն աչքի պոչով նայում էր իրենով շլացած երեխաներին, ու սիրտը հպարտությունից քիչ էր մնում դուրս թռչի։

Հանկարծ նա փողոցի ծայրում նկատեց իրենց դասարանի Համլիկին։ Նկատեց ու ցանկացավ մի այնպիսի արտասովոր բան անել, որ Համլիկը տեսներ և հիացմունքից «հալվեր» տեղում։ «Թող նա էլ տեսնի, թե ինչպես եմ չմշկում», մտածեց Անոն և ուժ տալով ոտքերին, սլացավ առաջ։

Այդ պահին, երբ նա իր ետևից եկող աղջիկների վախեցած ճիչերի ուղեկցությամբ, ճարպիկ մի ոստյունով թռավ մայթին թափված քարածխի բարձր բլրակի վրայից, ափսոսանքով նկատեց, որ Համլիկը թեքվել էր արդեն մոտակա նրբանցքը։

Նա մի պահ կանգ առավ ու լուռ նայեց հեռացող աղջկա ետևից։ Ինչ-որ աներևույթ բան, ասես, պոկվեց նրա սրտից ու փշրվեց անձայն...

Անոյի հպարտությունն էր այդ։

* * *

Մի երկու օր հետո, երբ ցրտերը սկսեցին ավելի սաստկանալ, Անոյենց դասարանի տղաները որո-



*շեցին դպրոցի բակում չմշկելու համար սահադաշտ պատրաստել։ Մնում էր այդ մասին հայտնել դպրոցի դիրեկտորին։*

*— Սահադաշտն ի՞նչ է որ,— անտարբեր պատասխանեց Անոն,— իսկական չմուշկ քշողը սահադաշտում չի քշի։ Օրինակի համար՝ մեր փողոցի Վաչեն. ո՜ւխ, ինչպե՜ս է չմուշկներ քշում։ Ա՛յ, էսպես՝ մոմի նման,— և նա ի նշան մեծագույն գոհունակության աջ ձեռքը բռունցք դարձնելով՝ բթամատը վեր ցցեց,— բայց նա սահադաշտի անունը լսելիս փախչում է։*

*Դասարանի տղաների մեծ մասը գիտեին չմուշկներով սահել։ Ճիշտ է, ո՛չ Անոյի նման, բայց և այնպես վարժ ու համարձակ էին սահում։ Միայն աղջիկներն էին...*

*— Ա՛յ, եթե դու խոստանաս բոլորիս սովորեցնել, մենք էլ չմուշկներ կգնենք։ Ճիշտ չէ՞, աղջիկներ։*

*— Ռիսկի բան է... Ձե՛ք կարող։ Ոտքներդ տակներիցդ կփախչեն։ Ասենք, ձեզ հետ ի՞նչ եմ խոսում, աղջիկ եք էլի։ Դուք ո՞ւր, չմշկելն ո՞ւր,— արհամարհանքով ասաց Անոն։*

*— Ինչո՞ւ հատկապես Անոն,— ցածրաձայն ասաց Համլիկը, որ լուռ կանգնել էր մի անկյունում։— Ի՞նչ եք այդպես ուռեցնում... Իմ կարծիքով մյուս տղաներն էլ Անոյից պակաս չեն չմշկում...*

*Այդ օրը, դասերից հետո Անոյենց դասարանի տղաներից ու աղջիկներից ոչ մեկը տուն չգնաց։ Նրանք հավաքվել էին միջանցքում և անհամբեր սպասում էին։*

*— Դիրեկտորը համաձայնվեց,— հավաքվածներին մոտենալով ասաց Գագիկը,— և խոստացավ մի լավ մարզիչ հրավիրել մեզ համար։*

*Անոն, որ մեջքով շրջվել էր դեպի ընկերները և նայում էր ֆոտո թերթին, քիթը վեր ցցեց ու փորձեց հեռանալ, բայց Գագիկը կանգնեցրեց նրան։*

*— Երեկոյան բոլորս հավաքվում ենք դպրոցում, դու էլ կգաս, Անո։*

*— Է՛դ էր պակաս։ Ես ժամանակ չունեմ, մի կարևոր արշավի եմ պատրաստվում։*

*— Ի՞նչ արշավ, ի՞նչ բան,— հարցրին ընկերները։*

*— Հետո՛ կիմանաք,— խորհրդավոր տոնով պատասխանեց Անոն և մեծ-մեծ քայլերով հեռացավ։*

*Երեկոյան, երբ Անոյի դասընկերները հավաքվեցին դպրոցում՝ սահադաշտի աշխատանքները սկսելու, Անոն Վաչեենց տանը նստած՝ խորհրդակցում էր նրա հետ վաղվա «արշավի» մասին։*

(Շարունակելի)

# ԴՊՐՈՑՈՒՄ ԵՎ ՏԱՆԸ

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Թե դպրոցում դուք տեսնեք
Դպրոցական Վանիկին,
«Ինչքա՜ն խելոք է,— կասեք,—
Աշակերտ է նա կարգին»։
Վանիկը միշտ դասերին
Հանգիստ նստում է, լռում,
Հարգում, լսում մեծերին,
Իսկ տանն առյուծ է կտրում։
Տե՛ս, օրագիրը ձեռքին՝
Ուրախացած մտավ տուն,
Հպարտ նայեց տատիկին
Եվ իր «հինգերն» է կարդում։
Տատիկն ասում է.— Ապրես,
Միշտ էլ «5»-եր ստանաս։
Վանիկ ջան, ճաշդ կուտես,
Խանութ հացի կգնաս։
— Խանո՞ւթ, հենց այդ էր պակաս,
Որ գնայի ես հացի,
Դու էլ շատ լավ կգնաս,
Ես գործ ունեմ, իմացի՛ր։
— Դե լավ, խանութ գնամ ես,
Դու ծաղիկները ջրիր։
— Չէ՛, չէ՛, այդ էլ դու կանես,
Դասերս ո՞վ սովորի...
Ու տատիկը կորացած,
Խանութից հաց է բերում,
Հետո ցնցուղը առած՝
Ծաղիկներն է լուռ ջրում։
— Աչքերս վատ են տեսնում,
Վանիկ, ասեղս թելես...
— Ի՜նչ զարմանք բան ես ասում,
Ասեղ թելել չգիտե՞ս։
Եվ տատիկը հազիվ-հազ
Բարակ ասեղն է թելում
Ու Վանիկի պատռված
Բլուզի ծայրն է կարում...
Կարգապահ է ու անխոս
Վանին միայն դպրոցում,
Բայց անկարգ է ու գոռոզ
Տանը, բակում, փողոցում...




# ՈՒԺԻ ԴԵՂԸ

Գ. ՅԱՂՋՅԱՆ

Նկ. Հ. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆԻ

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԵՐ

ՊՍՏԻԿ ԽՈՍՏԻԿ
ԵՐԿԱՐ ՄԱԿԱՐ
ԱՆԲԱՆ ԼԵՎՈՆ
ԼՈՒՍԻԿ
ՑՈՂԻԿ

Դեպքը կատարվում է Երևանում։
Մեր օրերն են։

## ՊԱՏԿԵՐ ԱՌԱՋԻՆ

*Սավիրախիտ ծառուղի պուրակում։*
*Ցանկապատից այն կողմ երևում է դպրոցի շենքը։ Խոստիկն ու Մակարը մոտենում են նստարաններից մեկին։*

ԽՈՍՏԻԿ—(*Շուրջը նայելով*)։ Դե ես գնացի, շուտ «Պիոներ կանչ» առնեմ ու գամ։
ՄԱԿԱՐ—Լուսիկը իր ընկերուհուն Ցողիկին ասաց, ես էլ ականջովս լսեցի։
ԽՈՍՏԻԿ—Կարող է քեզ շփոթեցնելու համար է էդպես ասել...
ՄԱԿԱՐ— Իսկ ինչի՞ պիտի ինձ շփոթեցներ...
ԽՈՍՏԻԿ— Որ գոնե կիրակի օրը աչքերը հանգստանան. խեղճ աղջիկը որ կողմն աչքերը շուռ է տալիս, երկար բոյդ առած՝ ցցվում ես դեմը։
ՄԱԿԱՐ— Առաջինը՝ իմ բոյը նորմալ է։
ԽՈՍՏԻԿ— Նորմալ է, բայց թանգարանում մարդկանց փողով ցույց տալու համար։
ՄԱԿԱՐ— Իսկ երկրորդը...
ԽՈՍՏԻԿ—(*Ընդհատելով*)։ Իսկ երկրորդը՝ ինքնաքննադատության բոլորովին չես դիմանում։
ՄԱԿԱՐ— Ոչ թե ինքնաքննադատության, այլ քննադատության, հասկացա՞ր։
ԽՈՍՏԻԿ— Հասկացա... Դե, ես շտապում եմ։
ՄԱԿԱՐ— Եվ, առհասարակ, ավելի լավ է ինձ նման բոյով լինել, քան թե քեզ նման գետնի երեսին չերևալ...
ԽՈՍՏԻԿ— (*Գնալով*)։ Համաձայն չեմ. լավ է պստիկ լինել ու ճարպիկ, քան թե երկար ու... (*Տեսնելով իրենց մոտեցող Լևոնին, խոսքը կիսատ է թողնում և գնում*)։
ԼԵՎՈՆ— (*Հեգնանքով*)։ Կիրակնօրյա զբոսանքի՞ եք դուրս եկել։
ՄԱԿԱՐ— Դա քո գործը չէ։
ԼԵՎՈՆ— Դե՛հ, դե՛հ, ես քեզ համար երեխա չեմ, թեք հարված կտամ, բոյովդ մեկ նոկաուտ կլինես...
ՄԱԿԱՐ— (*Ետ-ետ քաշվելով*)։ Ի՞նչ ես ուզում։
ԼԵՎՈՆ— Ինչո՞ւ ես դասղեկին գանգատվել։
ՄԱԿԱՐ— Մեր դասարանի աղջիկներին մի՛ ծաղրի, չգանգատվեմ։
ԼԵՎՈՆ— Տղա ես, մի թույլի ծաղրեմ, ոչ թե աղջկա նման վազիր գանգատվիր։

ՄԱԿԱՐ— (Հանկարծ նկատում է եկող Լուսիկին)։ Լևոն ջան, արի գնանք։

ԼԵՎՈՆ— (Զարմացած)։ Ու՞ր։

ՄԱԿԱՐ— Գնանք, ես քեզ համար պաղպաղակ առնեմ։

ԼԵՎՈՆ— Ինչո՞ւ հանկարծ քաղցրացար... (Շուրջն է նայում, տեսնում Լուսիկին)։ Հա՜... ձեր գեղեցկուհուն ես ուզում փրկել...

ՄԱԿԱՐ— Արի, Լևոն, խնդրում եմ, ամենալավ պաղպաղակից կառնեմ, ինչքա՜ն ուզում ես։

ԼԵՎՈՆ— (Կոպտորեն թևն ազատելով)։ Ի՛նչ ես ճանճի պես կպել, քո պաղպաղակն ինձ հարկավոր չէ... (Մոտեցող Լուսիկին)։ Սիրուն Լուսիկ, տիկ, տիկ, տիկ... Ունիվերմագի տիկնիկ...
(Լուսիկը լուռ և արհամարհական նայում է Լևոնին, ապա Մակարին՝ կարծես օգնություն սպասելով նրանից)։

ՄԱԿԱՐ— (Անհամարձակ, կոկորդը մաքրելով)։ Ը՛ը... Լևոն։

ԼԵՎՈՆ— Ի՛նչ Լևոն, ինքդ չխնդրեցի՞ր, որ ծաղրեմ։

ՄԱԿԱՐ— (Խայթվածի նման)։ Ե՞ս...

ԼԵՎՈՆ— (Լուսիկին՝ ցույց տալով Մակարի կողմը)։ Սարի պես մեջքիդ կանգնած՝ դողում է տղան, հիացիր...
(Ծիծաղելով հեռանում է և արդեն հեռվից կանչում)։ Երկար Մակար, հարգանքներս... (Մակարն ակամա շարժվում է անում դեպի նա, բայց մնում է կանգնած։ Մի պահ ծանր լռություն)։

ՄԱԿԱՐ— (Ներճացած)։ Իսկական խուլիգան է... (Լուսիկը լուռ է)։ Քո գալուց առաջ ես նրա հետ խոսում էի, ասում էի, որ...

ԼՈՒՍԻԿ— Ինձ չի հետաքրքրում, թե ինչ էիր ասում։

ՄԱԿԱՐ— Չէ, դու լսիր։ Ես նրան հարցնում եմ. «Ինչու՞ ես մեր դասարանի աղջիկներին ծաղրում», իսկ նա, թե՝ «Դա իմ գործն է»... Հետո, երբ տեսանք գալիս ես, անմիջապես հասկացա, որ մի հիմարություն կանի, բռնեցի թևից, ասում եմ. «Արի գնանք, քեզ համար պաղպաղակ առնեմ», ասում եմ՝ «Արի, Լևոն», խնդրում եմ, իսկ նա՝ չէ. մնաց... ու տեսա՞ր, քեզ վիրավորեց։

ԼՈՒՍԻԿ— Իսկ դու տեսա՞ր։

ՄԱԿԱՐ— Իհարկե, տեսա, այստեղ կանգնած էի չէ՞..

ԼՈՒՍԻԿ— (Մի պահ արհամարհանքով նրան նայելուց հետո, շատ սառը)։ Դուցե հիմա էլ մի ուրիշ տեղ կկանգնես, այստեղ ես ու Ցողիկն ուզում ենք պարապել։

ՄԱԿԱՐ— Դու իզուր ես ինձնից նեղանում... ի՞նչ կարող էի անել նրան, ուրիշ բան է, եթե խելքը գլխին տղա լիներ, մի երկու այնպիսի խոսք կասեի, որ տան ճանապարհը չգտներ... Թե չէ, սա խուլիգանի մեկն է, հետը գլուխ դնել, նշանակում է կռվել. մեկ էլ տեսար քարը վերցրեց ու...

ԼՈՒՍԻԿ— Վախկո՛տ... (Հեռանում է)։

ՄԱԿԱՐ— (Տխուր նայելով նստարանին)։ Ահա՛...

ԽՈՍՏԻԿ— (Գալիս է հակառակ կողմից)։ Լսիր, Մակար, նստած վիճակում դու նորմալ մարդու բոյ ես ստանում։

ՄԱԿԱՐ— Դե գնա՛, դու էլ...

ԽՈՍՏԻԿ— Դե լավ, մի՛ հոտի, կատակել չի՞ կարելի, ի՞նչ է։

ՄԱԿԱՐ— (Հանկարծ նրան դառնալով)։ Խոստիկ, ի՞նչ անեմ, որ չվախենամ։

ԽՈՍՏԻԿ— Ումի՞ց։

ՄԱԿԱՐ— Առհասարակ։

ԽՈՍՏԻԿ— Գրպանումդ քար պահիր։

ՄԱԿԱՐ— (Հանկարծ շատ խիստ)։ Բան եմ հարցնում քեզ, ինչո՞ւ եմ ես վախկոտ։

ԽՈՍՏԻԿ— Առաջինը՝ մի՛ գոռա, իսկ երկրորդը քեզ բոլորովին էլ վախկոտի նման չես պահում, ինձ նման ալան տղային քիչ է մնում աչքերով ուտես... (Մակարը լուռ նեղում է գնալու, Խոստիկը պահում է նրան)։ Սպասիր, իսկ ի՞նչ է պատահել... բան եմ հարցնում...

ՄԱԿԱՐ— Լուսիկը վերջնականապես կարծիքը փոխեց իմ մասին։

ԽՈՍՏԻԿ— Այսի՞նքն... լավացրե՞ց, թե վատացրեց։



ՄԱԿԱՐ— Վատացրեց։
ԽՈՍՏԻԿ— Ինչո՞ւ։
ՄԱԿԱՐ— Լևոնը ինձ մոտ ծաղրեց նրան, ու ես ոչինչ չարի...
ԽՈՍՏԻԿ— Իսկ ինչո՞ւ չարիր։
ՄԱԿԱՐ— Ի՞նչ անեի։
ԽՈՍՏԻԿ— Վզակոթից բռնեիր, մի կողմ գցեիր։
ՄԱԿԱՐ— Ու՞մ, Լևոնի՞ն... Փողոցային տղաների հետ ընկերություն է անում, բոքսով է պարապում, ուզում ես Լուսիկի մոտ վերջնականապես խայտառակվեի՞։
ԽՈՍՏԻԿ— Լսիր, դու զարմանալի տղա ես, Լևոնն ի՞նչ է քեզ մոտ, որ վախենում ես նրանից. մի հատ որ խփես, սաղ տեղը լեզուն կմնա։
ՄԱԿԱՐ— Իսկ քարը՞...
ԽՈՍՏԻԿ— Ո՞ր քարը։
ՄԱԿԱՐ— Մեկ էլ տեսար վազեց քարի։
ԽՈՍՏԻԿ— Մինչև նա քար վերցնի, դու կարող ես նրա հոգին առնել...
ՄԱԿԱՐ— Իսկ եթե մինչև այդ նա քարով հասցնի՞։
ԽՈՍՏԻԿ— Չէ, քեզանից մարդ չի դուրս գա։ (Ընդօրինակելով)։ «Մեկ էլ տեսար», «իսկ եթե»... Թե էդպես մտածես, իհարկե, «մեկ էլ տեսար» էլ կանի, «իսկ եթե» էլ...
ՄԱԿԱՐ— Բա ինչպե՞ս մտածեմ։
ԽՈՍՏԻԿ— Մտածիր, որ դու իրենից ուժեղ ես, որ մի հատ խփես, գլուխկոնծի կտա, մտածիր, որ քեզ հետ համեմատած՝ մժեղ է։
ՄԱԿԱՐ— Հետո՞...
ԽՈՍՏԻԿ— Հետո այն, որ փոխանակ դու նրանից վախենալու, ինքը քեզնից կվախենա։
ՄԱԿԱՐ— Բան ասացիր դու էլ... Իմ մտածելուց ի՞նչ օգուտ, ինքը չի իմանա, որ ես մտածել եմ, թե ինձ մոտ մժեղ է, ու մի լավ կհասցնի։
ԽՈՍՏԻԿ— Իսկ դու էնպես մտածիր, որ ինքն էլ իմանա... (Աչքերը խոժոռելով)։ Աչքերդ էսպես արա ու ջղային տար ու բեր։
ՄԱԿԱՐ— Էսպե՞ս... (Փորձում է)։
ԽՈՍՏԻԿ— Ավելի՛, ավելի՛, ջղային... ա՜յ, էդպես, հիանալի է... էդպես որ անես ու հետն էլ հակառակն մտածես, թե իրենից ուժեղ ես, էնպես կփախչի, որ հետքն էլ չես գտնի։
ՄԱԿԱՐ— Բայց, ճիշտ, որ փախչի, լավ կլինի, չէ՞...
ԽՈՍՏԻԿ— Իհարկե... Թե բախտդ բերի, ու Լուսիկն էլ ներկա լինի, կարծիքը նորից կփոխի քո մասին... լավացնելու իմաստով, իհարկե...
ՄԱԿԱՐ— (Հանկարծ մի կողմ նայելով, Խոստիկին քաշում է ծառի ետևը)։ Խոստիկ, արի հեռանանք, գալիս է։
ԽՈՍՏԻԿ— Ո՞վ, Լևոնը՞...
ՄԱԿԱՐ— Չէ, Լուսիկը Ցոլիկի հետ, չեմ ուզում ինձ տեսնի։
ԽՈՍՏԻԿ— Ընդհակառակը, խենթ, նրանք գալիս են իրենց նստարանի վրա պարապելու։ Մտիր



այստեղ, թփերի մեջ, թող առայժմ քեզ չտեսնեն։ Ես էլ կվազեմ դպրոցի բակը, Լևոնն էնտեղ կլինի, կհամոզեմ, որ նորից գա Լուսիկին ծաղրի... դու ժամանակին թփերից դուրս կգաս, կվախեցնես Լևոնին ու Լուսիկի



մոտ պարզերես կգտնաս... (Շտապում է հեռանալ):

ՄԱԿԱՐ— Սպասի՛ր:

ԽՈՍՏԻԿ— Ո՛չ մի սպասիր, ինչ որ ասում եմ, արա:

ՄԱԿԱՐ— (Հասնելով արդեն հեռացող Խոստիկին): Գոնե ասա Լևոնին, որ իրենից ուժեղ եմ, թող նախօրոք իմանա:

ԽՈՍՏԻԿ— Կասեմ, մտիր թփերի մեջ: (Գնում է վազելով):

ՄԱԿԱՐ— (Նայում է Խոստիկի ետևից, ապա եկող Լուսիկի կողմը, փորձի համար խաժառում է աչքերը, ջղային տանում-բերում, և ըստ երևույթին, գոհ ֆշալով ասում): Պարզ է: (Թաքնվում է թփերի մեջ: Գալիս են Լուսիկն ու Ցողիկը):

ՑՈՂԻԿ— (Շուրջը նայելով): Ասացի չէ՞, գնացած կլինի... (Նստելով): Նստի՛ր:

ԼՈՒՍԻԿ— (Նստում է): Զարմանալի է, չէ՞, Ցողիկ, այնպես որ նայում ես, թվում է, թե մեր տղաներից ամենաուժեղն է ու հանկարծ...

ՑՈՂԻԿ— Ճիշտն ասե՞մ, Լուս, ես էլի կարծում եմ, որ նա ուղղակի չի ուզեցել գլուխ դնել:

ԼՈՒՍԻԿ— Ուրեմն, ի՛նչ է, խաբո՞ւմ եմ քեզ... ինքն իր բերանով ասաց. «Ի՞նչ կարող էի անել, մեկ էլ տեսար՝ քարը վերցրեց»:

ՑՈՂԻԿ— Իսկ որ փախկոտ ասացիր, ոչինչ չասա՞ց...

ԼՈՒՍԻԿ— Ոչի՛նչ, լուռ նայեց երեսիս:

ՑՈՂԻԿ— Բայց դու իզուր ես ասել:

ԼՈՒՍԻԿ— Բոլորովին էլ իզուր չէ, անրան հիմարի մեկը նրա ներկայությամբ ծաղրում է ինձ, իսկ ինքը ականջներն է թափահարում... Ես իմ աղջիկ տեղով, որ տեսնեմ մեր դասարանի տղաներին մեկն ու մեկը վիրավորում է, չեմ համբերի, մեջ կխառնվեմ:

ՑՈՂԻԿ— (Նկատելով պուրակի ցանկապատից ներս թռչող Լևոնին): Լուսիկ, Լևոնը...

ԼՈՒՍԻԿ— Դե՜հ, թող փորձի մի բան ասի...

ԼԵՎՈՆ— (Մոտենում է, կանգնում նրանց մոտ ու ժպտալով նայում):

ԼՈՒՍԻԿ— Ի՞նչ է:

ԼԵՎՈՆ— Ոչինչ:

ԼՈՒՍԻԿ— Դե որ ոչինչ, գնա գործիդ:

ԼԵՎՈՆ— Ո՛չ այգին է ձերը, ո՛չ էլ նստարանը, ինչքան ուզենամ, կմնամ։

ՑՈՂԻԿ—Այդ դեպքում մենք կգնանք... (Ոտքի է ել-նում)։ Գնանք, Լուսիկ։

ԼՈՒՍԻԿ— Գնանք...

ԼԵՎՈՆ— Սիրուն Լուսիկ, տիկ, տիկ, տիկ։

ԼՈՒՍԻԿ— Դե փորձիր՝ շարունակիր։

ԼԵՎՈՆ— Ունիվերմագի տիկնիկ։

ԼՈՒՍԻԿ— Լավ, թե ես, ում հարկն է, չգանգատ-վեմ, ամոթ ինձ։

ԼԵՎՈՆ— Գանգատվիր, չեմ վախենում... (Նկատելով թփերից դուրս եկող Մակարին)։ Երկար Մակա՞ր, դու է՞լ ես այստեղ... (Լուսիկին)։ Խնդրեմ, եթե աղջիկ դարձար, ես մի տղա, վրա տվեք։

ՄԱԿԱՐ— (Սպառնական)։Դե կրկնիր ասածդ, թե տղա ես... (Լուսիկն ու Ցողիկը իրար են նայում)։ Կրկնի՛ր ասում եմ։

ԼԵՎՈՆ— Ի՞նչը կրկնեմ։

ՄԱԿԱՐ— Ի՞նչ ասացիր քիչ առաջ...

ԼԵՎՈՆ— Ասացի, որ դու էլ սրանց նման աղջիկ ես։

ՄԱԿԱՐ— Իմ մասին չէ, Լուսիկին ի՞նչ էիր ասում. «Սիրուն Լուսիկ», հետո՞...

ԼԵՎՈՆ— (Կովի պատրաստվելով)։ Սիրուն Լուսիկ, տիկ, տիկ, տիկ, Ունիվերմագի տիկնիկ... (Մակարը Խոստիկի սովորեցրածի նման աչքերը խոժոռում է և այս ու այն կողմ տարուբերում։ Ներկաները զարմա-ցած նրան են նայում։ Լևոնը տեսնելով, որ Մակա-րը բացի աչքերը ոլորելուց, բան չի պատրաստվում անել, նորից իր ինքնավստահ դիրքն է ընդունում)։ Ինչ ես գերասանի նման աչքերի խաղ տալիս, տղա ես, առաջ արի...

ՄԱԿԱՐ—Դե՛, մեկ էլ ասա։ (Աչքերն է ոլորում)։

ԼԵՎՈՆ— Մեկ էլ կասեմ ու տասնմեկ էլ։

ՄԱԿԱՐ—(Ավելի կրքոտ ոլորելով աչքերը)։ Չէ, դե՛ ասա, ասա՛...

ԼԵՎՈՆ— Սիրուն Լուսիկ, տիկ, տիկ, տիկ, Ունի-վերմագի տիկնիկ։

ՄԱԿԱՐ— Դե, մե՛կ էլ փորձիր կրկնել։

ԼԵՎՈՆ— Սիրուն Լուսիկ, տիկ, տիկ, տիկ, Ունի-վերմագի տիկնիկ... սիրուն Լուսիկ, տիկ, տիկ, տիկ...

ԼՈՒՍԻԿ— (Մոտենում է Մակարին, արհամարհական նա-յում նրան, խոսում է լացակումած)։ Հարկավոր չէ ինձ քո պաշտպանությունը... Գնանք, Ցողիկ... (Գնում է հագիվ արցունքները պահելով)։

ՑՈՂԻԿ— (Մակարին, արհամարհական)։ Քաջ Նազար... (Հետևում է Լուսիկին)։

ԼԵՎՈՆ— (Ծիծաղելով նայում է աղջիկների ետևից, ապա դիմում է կոտր ընկած Մակարին)։ Երկար Մակար, հարգանքներս... (Ուզում է գնալ)։

ՄԱԿԱՐ— Սպասիր... (Լևոնը կանգնում է, հարցական նայում նրան)։ Խոստիկը չասա՞ց քեզ, որ ես ուժեղ եմ քեզնից։

ԼԵՎՈՆ— Ո՞վ, դո՞ւ... դրա հույսը չունենաս, ինձ-նից ուժեղ տղա չկա... (Գնում է ծիծաղելով)։

ՄԱԿԱՐ— (Հուսահատ ու խեղճացած նստելով)։ Վերջնա-կանապես խայտառակվեցի։

Վարագույր

## ՊԱՏԿԵՐ ԵՐԿՐՈՐԴ

Նույն վայրը դպրոցի մոտի պուրակում. պայու-սակները ձեռքներին գալիս են Լուսիկը, Ցողիկն ու Խոստիկը։

ԽՈՍՏԻԿ— Չէ, դուք ինձ լսեցեք... նախ եկեք նստենք։

ԼՈՒՍԻԿ— Տուն պիտի գնանք։

ԽՈՍՏԻԿ— Տունը չի փախչի... ենթադրենք, թե վերջին դասը ազատ չէր, ու դեռ դպրոցում ենք։

ՑՈՂԻԿ— Լուսիկ, նա ճիշտ է ասում. հարկավոր է լուրջ մտածել Մակարի մասին։

ԽՈՍՏԻԿ— Այստեղ հարցը միայն Մակարը չէ...

ԼՈՒՍԻԿ— (Նստելով)։ Դու խորամանկություն մի անի, ո՞վ չգիտի, որ դու և Մակարը...

ԽՈՍՏԻԿ— Ես բոլորովին չեմ հրաժարվում, ես ու Մակարը մի տեսակ անբաժան մանկիկ-ներ ենք դարձել, մեր մասին նույնիսկ «Պիո-ներ» ամսագրում էր գրված, բայց հիմա





Մակարի հարցն ընդհանուր նշանակություն է ստանում։

ԼՈՒՍԻԿ— Այսինքն։

ԽՈՍՏԻԿ— Տեսեք, թե ինչ է ստացվում, Մակարը Լևոնից տասն անգամ ուժեղ է, բայց վախենում է նրանից։

ՑՈՂԻԿ— Ինչո՞ւ...

ԽՈՍՏԻԿ— Որովհետև վստահ չէ իր ուժին, ներքին հավատը չունի... Դուք կարծում եք միայն Մակա՞րն է այդպես, քի՞չ կան մեր տղաների մեջ այնպիսիները, որ այս կամ այն բանը հեշտությամբ կարող են հաղթահարել, բայց վախենում են, չեն հավատում իրենց ուժերին։

ԼՈՒՍԻԿ— Ուրեմն ի՞նչ ես առաջարկում։

ԽՈՍՏԻԿ— Հարկավոր է Լևոնի մասին էլ մտածել. նա հիմա իրեն ամենազոր է պատկերացնում ու դրանից էլ երես է առել... Պատկերացնո՞ւմ եք, քիթն ինչպես կտրորվի, թե հանկարծ Մակարը, որից ամենից քիչ է վախենում, մի լավ դաս տա նրան։

ԼՈՒՍԻԿ— Մակարը չի կարողանա դաս տալ, սովորականի նման կվախենա։

ԽՈՍՏԻԿ— Չի՛ վախենա, ես արդեն հնարը գտել եմ

ՑՈՂԻԿ— Ի՞նչ հնար։

ԽՈՍՏԻԿ— (Գունավոր հեղուկով լի մի սրվակ հանելով գրպանից)։ Ահա, կխմի սա ու անվախ կդառնա։

ՑՈՂԻԿ— Իսկ դա ի՞նչ է որ...

ԽՈՍՏԻԿ— Սովորական թեյ, մեջը երկու կաթիլ վալերիանկա լցրած, որ դեղի հոտ գա...

ՑՈՂԻԿ— Ա՛յ քեզ բան... ես չգիտեի, որ թեյը մարդու անվախ է դարձնում։

ԽՈՍՏԻԿ— Թեյը մարդու անվախ չի դարձնում իսկ սա Մակարին անվախ կդարձնի...

ՑՈՂԻԿ— Չեմ հասկանում։

ԽՈՍՏԻԿ— Մենք Մակարին կհամոզենք, որ սա հազվագյուտ դեղ է Չինաստանից բերված, ով որ խմի, արտակարգ ուժ է ստանում։

ԼՈՒՍԻԿ— (Թերահավատ)։ Ու նա էլ հավատաց...

ԽՈՍՏԻԿ— Նայած ով կտա սա նրան։ Եթե ես տամ, չի հավատա՝ շատ եմ խաղ խաղացել գլխին, իսկ եթե դու տաս...

ԼՈՒՍԻԿ— Ե՞ս...

ԽՈՍՏԻԿ— Իհարկե, նա քեզ շատ է հարգում և բոլորովին չի մտածի, թե խաբում ես։

ԼՈՒՍԻԿ— Չէ, ես չեմ խաբի։

ԽՈՍՏԻԿ— (Աղերսական)։ Ընկերոջն օգնելու համար...

ԼՈՒՍԻԿ— Ո՛չ մի դեպքում։

ՑՈՂԻԿ— Զարմանալի աղջիկ ես, Լուս... քի՞չ է պատահել, որ կատակով խաբել ենք իրար։

ԼՈՒՍԻԿ— Իրար ուրիշ, մենք ընկերուհիներ ենք։

ԽՈՍՏԻԿ— Մակարն էլ, կարծեմ, թշնամի չէ։

ԼՈՒՍԻԿ— Բայց Մակարը...

ԽՈՍՏԻԿ— Ո՛չ մի խոսք, քվեարկում եմ. ո՞վ է համաձայն, որ Լուսիկը սա տա Մակարին... (Ցողիկն ու Խոստիկը ձեռք են բարձրացնում)։ Անցնում է ձայների մեծամասնությամբ... (Մեկնելով սրվակը)։ Ա՛ռ։

ՑՈՂԻԿ— Տեսեք, Մակարը։

ԽՈՍՏԻԿ— Խեղճը մի օրում նիհարել է... Ցողիկ, Թաքնվիր, Լուսիկ, քե՛զ տեսնեմ... Ես էլ մի դպրոց վազեմ ու գամ։

ԼՈՒՍԻԿ— Ինչո՞ւ ես դպրոց վազում։

ԽՈՍՏԻԿ— Մի բան եմ մոռացել, մինչև ես գալս անպայման դա պիտի խմեցրած լինես... Ցողիկ, ասացի թաքնվիր... (Թևից բռնելով հեռացնում է։ Արդեն հեռվից շշուկով)։ Լուսիկ, էլ չեմ ասում, հինգ րոպեից այստեղ կլինեմ... (Ցողիկին թաքցնում է, ինքը կուզեկուզ գնում դեպի դպրոց։ Լուսիկը նայում է եկող Մակարի կողմը, սրվակը տեղավորում է պայուսակի մեջ և մի գիրք հանելով, ձևացնում, թե կարդում է։ Գալիս է Մակարը՝ գլխիկոր տխուր, պայուսակը մինչև գետին կախ գցած։ Տեսնում է Լուսիկին, ուզում է աննկատ ետ գնալ)։

ԼՈՒՍԻԿ— (Ձևացնելով, որ նոր տեսավ նրան)։ Մակա՞ր։

ՄԱԿԱՐ— (Գլուխը կախ փնթփնթում է)։ Կարծեցի արդեն տուն գնացած կլինեք։

ԼՈՒՍԻԿ— Ես քեզ էի սպասում։

ՄԱԿԱՐ— Ի՞նձ։

ԼՈՒՍԻԿ— Ինչո՞ւ ես զարմանում, քեզ... ուզում եմ խոսել քեզ հետ...

ՄԱԿԱՐ— Երեկվա մասի՞ն։

ԼՈՒՍԻԿ— Կիմանաս, նստիր... (Մի կողմ է քաշվում, տեղ բացելով նրա համար)։ Նստի՛ր, ասում եմ... (Մակարը մի պահ տատանվելուց հետո նստում է)։ Մակար, ես շատ եմ ուզում իմանալ... ինչո՞ւ երեկ, երկու անգամ քո ներկայությամբ Լևոնը ծաղրեց ինձ, ու դու նրան ոչինչ չասացիր։

ՄԱԿԱՐ— Ասացի... ասացի՝ փորձիր, մեկ էլ կրկնիր։

ԼՈՒՍԻԿ— Իսկ որ նա մեկի տեղը երեք անգամ կրկնե՞ց։

ՄԱԿԱՐ— Ես մեղավոր չեմ, Խոստիկն ասաց, որ եթե ես մտածեմ, թե Լևոնից ուժեղ եմ, նա կըփախենա, կփախչի... Ես մտածեցի, աչքերս էլ նրա ասածի պես սուր բերեցի, ես ի՞նչ անեմ, որ Լևոնը չհասկացավ, թե ինչ եմ մըտածում ու չփախավ։

ԼՈՒՍԻԿ— Խոստիկը խաբել է քեզ։

ՄԱԿԱՐ— (Աշխուժանալով)։ Խաբե՞լ է։

ԼՈՒՍԻԿ— Իհարկե, խաբել է։ Ոչ թե պետք մտածել, որ ուժեղ ես, այլ պետք իսկականից ուժեղանալ։

ՄԱԿԱՐ— Ես մտածել եմ, սրանից հետո պետք օրական ութ ժամ ծանրություն բարձրացնեմ, որ մկաններս ամրանան։

ԼՈՒՍԻԿ— Դա, իհարկե, լավ միջոց է, բայց ավելի լավ միջոց կա, չինական միջոց...

ՄԱԿԱՐ— Չինական միջո՞ց...

ԼՈՒՍԻԿ— Ըհը՛, հատուկ դեղ է, բաղկացած է խըրմեն ու երկու բույս ջանցած՝ ուժը մեկին երկուս կդարձնա։

ՄԱԿԱՐ— Չի կարող պատահել։

ԼՈՒՍԻԿ— Ես էլ չէի հավատում, բայց որ հայրիկս իմ աչքի առաջ խմեց այդ դեղից ու մեր դաշնամուրը մենակ բարձրացրեց, աչքերս բաց մնացին։

ՄԱԿԱՐ— Լավ, դեղն ինչպե՞ս է մարդուն ուժեղացնում։

ԼՈՒՍԻԿ— Ո՞վ գիտի... հայրս ասում էր, որ չինացիները բժշկական հարցերում հայտնի են... Նույնիսկ, կարծեմ, մի ինչ-որ արմատ էլ ունեն, որ մարդու կյանքն է երկարացնում։

ՄԱԿԱՐ— Դա ճիշտ է, դա ես էլ եմ իմացել...



ԼՈՒՍԻԿ— Հա, տեսնո՞ւմ ես։

ՄԱԿԱՐ— Իսկ ի՞նչ է էդ ուժ ավելացնող դեղի անունը... չգիտե՞ս։

ԼՈՒՍԻԿ— Անո՞ւնը... չգիտեմ թեյացիլին է, թե սուտացիլին...

ՄԱԿԱՐ— (Շահագրգռված)։ Իսկ չես կարո՞ղ հայրիկիցդ հաստատ իմանալ...

ԼՈՒՍԻԿ— Իսկ քո ինչի՞ն է պետք...

ՄԱԿԱՐ— Դե գիտես, հայրիկս գնացքներ է ուղեկցում և ամեն շաբաթ Մոսկվա է գնում—գալիս, կխնդրեմ՝ հետը բերի։

ԼՈՒՍԻԿ— Դու կարծում ես այդպիսի դեղը բոլորին կտա՞ն

ՄԱԿԱՐ— Ինչո՞ւ չեն տա։

ԼՈՒՍԻԿ— Որովհետև կարող է մեր Լևոնի նման տղաների ձեռքն ընկնել, այն ժամանակ պատկերացնո՞ւմ ես ինչ կլինի։

ՄԱԿԱՐ— Դա ճիշտ է... (Պաուզայից հետո)։ Ափսո՜ս, թե այդ դեղից մի քիչ կլինե՜ր... ես էդ Լևոնին ցույց կտայի, թե ինչ է նշանակում մեր դասարանի աղջիկներին ծաղրել...

ԼՈՒՍԻԿ— (Հազիվ ծիծաղը զսպելով)։ Մի բան, որ ասեմ, ոչ ոքի չե՞ս ասի...

ՄԱԿԱՐ— Չեմ ասի։

ԼՈՒՍԻԿ— Երդվի՛ր։

ՄԱԿԱՐ—Երդվում եմ։

ԼՈՒՍԻԿ— Ես այդ դեղից մի քիչ ճարել եմ քեզ համար։

ՄԱԿԱՐ— (Ուրախությունից իրեն կորցրած)։ Ինձ համա՞ր...

ԼՈՒՍԻԿ— Ըհը՛, հորիցս գաղտնի պատարկեցի սըրվակից... ուզում էի ինքս խմել և Լևոնին, ինչպես հարկն է, խրատել, բայց միտքս փոխեցի, ես աղջիկ եմ, անհարմար է կռվել տղաների հետ... ճիշտ չե՞մ ասում։

ՄԱԿԱՐ— Իհարկե, ճիշտ ես ասում։

ԼՈՒՍԻԿ— Հետո մտածեցի, որ ամենահարմար թեկնածուն դու ես. նախ առանց դեղի էլ ուժեղ ես, հետո Լևոնը քեզ էլ է վիրավորել...

ՄԱԿԱՐ— Դու միայն դեղն ինձ հասցրու, մնացածը ինքդ կտեսնես։

ԼՈՒՍԻԿ— (Հանելով սրվակը)։ Ահա՛ դեղը։

ՄԱԿԱՐ— (Ոգևորված)։ Լուսի՜կ ջան...

ԼՈՒՍԻԿ— Մի գոռա, ոչ ոք չպետք է իմանա... առ խմիր։

ՄԱԿԱՐ— (Վերցնելով)։ Հիմա՞։

ԼՈՒՍԻԿ— Իհարկե, ուզում ես, որ մարդիկ տեսնե՞ն ձեռքիդ... խմիր իմ ներկայությամբ, թե չէ նորից ետ կտանեմ։

ՄԱԿԱՐ— (Սրվակը շուրթերին մոտեցնելով)։ Իսկ դառը չէ՞...

ԼՈՒՍԻԿ— Հայրիկս ասում էր, որ չէ... (Մակարը նախ փոքրիկ կում է անում, ապա խմում է ագահությամբ։ Մի պահ Լուսիկին նայելով, սպասում է դեղի ներգործությանը, ապա կամաց-կամաց ուղղվում է և





դեմքին լուրջ արտահայտություն տալով, հպարտ կեցվածք է ընդունում։ Լուսիկը խոսում է մեծ դժվարությամբ զսպելով ծիծաղը)։ Ազդե՞ց...

ՄԱԿԱՐ— (Ինքնագոհ, հպարտ)։ Ազդեց։ (Ելնում է, ձեռքերը բռունցք կազմած՝ ուժի արտահայտության շարժումներ անում)։

ԼՈՒՍԻԿ— Տեսա՞ր, արդեն դեմքիցդ էլ երևում է ուժդ...

ԼԵՎՈՆ— (Գալիս է դպրոցի կողմից)։ Ո՞վ է ինձ կանչել...

ՄԱԿԱՐ— (Բազմանշանակալից նրան նայելով)։ Ես...

ԼԵՎՈՆ— Դո՞ւ։

ՄԱԿԱՐ— Դե՛, հիմա փորձիր ասել այն, ինչ երեկ ասում էիր Լուսիկին... փորձի՛ր, ասում եմ։

ԼԵՎՈՆ— (Զարմացած)։ Իսկ եթե չփորձե՞մ։

ՄԱԿԱՐ— Եթե չփորձես, ուրեմն վախկոտ նապաստակ ես։

ԼԵՎՈՆ— Ո՞վ, ե՞ս։

ՄԱԿԱՐ— Դո՛ւ, դո՛ւ...

ԼԵՎՈՆ— Այդ էր պակաս, որ քեզանից էլ վախենամ։

ՄԱԿԱՐ— Դե, թե չես վախենում՝ ասա՛։

ԼԵՎՈՆ— Եվ կասեմ։

ՄԱԿԱՐ— Դե, ասա, ասում եմ...

ԼԵՎՈՆ— Չեմ ասի։

ՄԱԿԱՐ— Հա՞... չե՞ս ասի, իհարկե, չես ասի, գիտես, որ հոգիդ կհանեմ։

ԼԵՎՈՆ— (Տեսնելով, որ ներկաների թիվն ավելացել է Ցողիկի և Խոստիկի գալով)։
Չեմ ուզում հետդ գլուխ դնել, թե չէ թեք հարված կտամ, բոլորդ մեկ...

ՄԱԿԱՐ— (Ընդհատելով, չոր)։ Շատ մի խոսի, ասա երեկվա ասածդ, թե տղա ես...

ԼԵՎՈՆ— (Վճռական)։ Դե հերիք է վախեցնես...
(Լուսիկին)։ Սիրուն Լուսիկ, տիկ, տիկ...(Մակարը բռնում է Լևոնի ձեռքը, նրան ծունկի բերում։ Լևոնն անսպասելիությունից և ցավից դեմքը կնճռոտելով ճչում է)։ Բա՛ց թող, ձեռքս ջարդեցիր...

ՄԱԿԱՐ— Ներողություն խնդրիր Լուսիկից... Խնդրիր, ասում եմ...

ԼԵՎՈՆ— (Լուսիկին)։ Ներողություն։

ՄԱԿԱՐ— Խոստացիր, որ սրանից հետո ոչ մեկին չես վիրավորի... Խոստացիր, ասում եմ։

ԼԵՎՈՆ— Դե ասացի՝ խոստանում եմ։

ՄԱԿԱՐ— (Բաց թողնելով ձեռքը)։ Դե՛հ, հիմի գնա ու էլ աչքիս չերևաս...

ԼԵՎՈՆ— (Հեռանում է մյուսների ծիծաղկոտ դեմքերին նայելով ու ցաված մասերը տրորելով։ Խոսում է արդեն պատկառելի հեռավորության վրա գտնվելուց հետո)։
Սպասիր, ես ձեր դասղեկին կզանգատվեմ, կտեսնես։ (Մակարը շարժում է անում դեպի նա՝ Լևոնը փախչում է)։

ԽՈՍՏԻԿ— Կեցցե՛ս Մակար... գիտեի, որ ուժեղ ես, բայց էսքան չէի կարծում։ (Ընդհանուր ծիծաղ)։

ՑՈՂԻԿ— (Սեղմում է Մակարի ձեռքը)։ Կեցցե՛ս, ես այդպես էլ գիտեի, որ եթե ուզենաս, Լևոնին ծունկի բերելը քեզ համար խաղ ու պար է։

ԼՈՒՍԻԿ— (Սեղմում է Մակարի ձեռքը)։ Այ, հիմա դու այն ես, ինչ որ կաս... Ինչպես հարկն էր, անբան Լևոնին խրատեցիր, շնորհակալ եմ։

ՄԱԿԱՐ— (Երջանիկ)։ Ընդհակառակը, ես՛ եմ քեզնից շնորհակալ։

ԽՈՍՏԻԿ— Ինչի՞ համար, չհասկացա դեղի՞...

ՄԱԿԱՐ— (Զարմացած Լուսիկին նայելով)։ Նա՞ որտեղից գիտի։

ԽՈՍՏԻԿ— Ինչպե՞ս թե որտեղից գիտի, ես եմ հասարակ թեյը սրվակի մեջ լցրել, վրան էլ երկու կաթիլ վալերիանկա ավելացրել ու բերել Լուսիկին տվել։

ՄԱԿԱՐ— Ուրեմն... ուրեմն, այդ դեղը...

ԼՈՒՍԻԿ— Քեզ քո ուժերի նկատմամբ հավատ ներշնչելու համար էր հնարված։

ՄԱԿԱՐ— Ա՛յ քեզ բա՜ն... Չի՛ կարող պատահել...

ԽՈՍՏԻԿ— Պատահել, պրծել է... Թե գործն արդար է, ու մարդն իր ուժերին վստահ, սարեր շուռ կտա... տատս է ասել։(Բոլորը ծիծաղում են)։

Վարագույր



## ՔԱՌԱՍՈՒՆ ՀԱԶԱՐ ՉՂՋԻԿ

Ամառային արձակուրդների ժամանակ Նորիկը գնացել էր Թուրքմենստան, իր երկրաբան հորեղբոր մոտ:

Թուրքմենստանի բնությունը շատ հետաքրքրեց Նորիկին: Նա հաճախ հորեղբոր տղայի՝ Ռուբիկի հետ գնում էր էքսկուրսիա: Ռուբիկը ավարտել էր տասնամյակը և պատրաստվում էր համալսարան ընդունվելու:

Շատ հետաքրքիր էին անցնում նրանց ճանապարհորդությունները: Մի անգամ, ճանապարհորդությունից հետո տուն վերադառնալիս, Նորիկը գետնի վրա նկատեց մի փոքրիկ կենդանի:

— Այս ի՜նչ տարօրինակ մուկ է,— բացականչեց նա:

— Մուկ չէ, չղջիկ է,— բացատրեց Ռուբիկը, երևի հիվանդ է եղել, երամից ետ է ընկել և դեռ իրենց ամառանոցը չհասած՝ սատկել:

— Ի՞նչ ամառանոց, ի՞նչ երամ:

Եվ Ռուբիկը սկսեց պատմել.

— Մեզնից մի քանի կիլոմետր հեռավորության վրա գտնվում է Բախարդենյան խորշը: Այդ խորշը հենց չղջիկների ամառանոցն է: Ամեն ամառ այնտեղ են հավաքվում 40.000-ի չափ չղջիկ և ապրում մինչև ձմեռ: Խորշում կա մի լիճ, որի ջուրը տաքացնում է մոտակա ժայռերը և թույլ չի տալիս, որ չղջիկները ձմեռեն այդ ժայռերում: 12 աստիճանից բարձր ջերմությունը խանգարում է նրանց ձմեռային քուն մտնելուն: Դրա համար էլ նրանք ձմեռը չվում են ավելի ցուրտ տեղեր և քուն մտնում մինչև գարուն:





— Իսկ ինչո՞վ են սնվում չղջիկները,— հարցրեց Նորիկը:

— Նրանք սնվում են վնասատու, հիվանդություն տարածող, այգիների ու դաշտերի բերքը ոչնչացնող միջատներով: Շատ օգտակար են չղջիկները: Բախարդենյան խորշի չղջիկները ամեն գիշեր ոչնչացնում են մոտ տասը փութ վնասատու միջատներ:

Այս հետաքրքիր խոսակցությունն ընդհատեցին Արմենուհին և Սուսաննան՝ Ռուբիկի փոքրիկ քույրերը, որոնք հեռվից նկատել էին նրանց և ընդառաջ վազել:

Նորիկը շատ ափսոսաց, որ շուտ տուն հասան: Ճաշից հետո նա կրկին դիմեց Ռուբիկին, խընդրելով, որ սա շարունակի պատմել չղջիկների մասին: Սակայն Ռուբիկն այլևս ոչինչ չգիտեր: Նորիկը այս անգամ դիմեց հորեղբորը: Հորեղբայրը չմերժեց նրան և պատմեց հետևյալը:

Ամբողջ աշխարհում կան մոտ 800 տեսակի տարբեր չղջիկներ: Սովետական Միության տերիտորիայում դրանցից 39 տեսակ է ապրում: Չղջիկները բույն չեն շինում: Ապրում են շենքերի տանիքներում, ծառերի փչակներում, քարանձավներում, հին ավերակներում: Նըրանք սովորաբար բնակվում են խմբերով, այդ խմբերում չղջիկների թիվը երկու-երեքից կարող է հասնել մինչև մի քանի տասնյակ հազարի: Սովետական Միության մեջ չղջիկների ամենամեծ բնակավայրը Բախարդենյան խորշն է: Չղջիկները կաթնասուն կենդանիներ են: Նրանց ձագերն այնքան արագ են մեծանում, որ ծնվելուց 40 օր հետո մայրերի չափ են դառնում: Չղջիկների մոտ ամենից շատ զարգացած են լինում ականջները, իսկ ամենից քիչ՝ աչքերը: Դրանք նույնիսկ այնքան թույլ են, որ ոչ ցերեկն են լավ տեսնում, ոչ՝ գիշերը: Եթե չղջիկի աչքերը փակենք՝ նա առանց շփոթվելու կթռչի ամենամութ սենյակում, իսկ եթե ականջը փակենք՝ այլևս չի կարողանա թռչել: Նախքան թռչելը չղջիկները մի քանի անգամ բերանները բաց ու խուփ են անում, հետո նոր թռչում: Պարզվում է, որ բերանը բաց ու խուփ անելով, չղջիկները ձայներ են ուղարկում մութ տարածության մեջ և սպասում դրանց արձագանքին: Այդ ձայները անլսելի են և, չղջիկից բացի, ոչ ոք չի իմանում նրանց մասին: Ձայները լույսի ճառագայթների նման գնում, կպչում են մութ տարածության մեջ գտնվող առարկաներին և արձագանք տալիս: Այդ արձագանքը միայն չըղջիկի գերզգայուն ականջներն են լսում: Դրա միջոցով չղջիկն իմանում է, թե որ առարկան ինչ հեռավորության վրա է գտնվում: Այդպիսով նա պատկերացում է կազմում իր առջև գտնվող տարածության մասին և ազատ թռչում:

Այժմ դուք շատ կզարմանաք, սիրելի Նորիկ և Ռուբիկ, եթե ձեզ ասեմ, որ չղջիկը ամեն ինչ տեսնում է մթության մեջ, բացի բրդոտ կենդանիներից: Նա կարող է մի փոքրիկ մոծակ տեսնել, բայց մի մեծ ոչխար՝ չըտեսնել: Այդ նրանից է, որ բուրդը և բրդե կտորեղենը կլանում են անլսելի ձայները և թույլ չեն տալիս, որ նրանց արձագանքը վերադառնա չըղջիկին: Իսկ չղջիկը արձագանք չստանալով կարծում է, թե այնտեղ ոչինչ չկա: Չղջիկների այս միամտությունից օգտվում են մի քանի տեսակ գիշերային թիթեռնիկներ, որոնց մարմինը մազով է ծածկված: Նրանց երբեք չղջիկները չեն կարողանում գտնել: Չղջիկների հարձակումներից անվնաս են մնում նաև բվաթիթեռները և «մետաքսաբեր» կոչվող թիթեռները, որոնք մազեր չունեն, բայց ունեն հզոր «ձայնորս ապարատներ»: Հենց որ չղջիկն սկսում է արձակել իր անլսելի ձայները՝ սրանք իսկույն լսում են և թաքնըվում...

Ահա այն ամենը, ինչ կարելի է ձեզ պատմել չղջիկների մասին: Հետաքրքի՞ր էր, թե՞ շատ ձանձրացաք:

— Շատ հետաքրքիր էր,— պատասխանեցին Նորիկն ու Ռուբիկը:

Մի քանի օր հետո Նորիկն արդեն ճանապարհ ընկավ դեպի Հայաստան: Ճանապարհին նա մտածում էր, որ տեղ հասնելուն պես իր դասընկերներին կպատմի չղջիկների և նրանց «ամառանոցի» մասին, որտեղ ամեն ամառ 40.000 չղջիկ է «հանգըստանում»:

Գ. ԱՐԳԱՐՅԱՆ

# ՏԻԿՆԻԿ

Ն. ՊԱԼԱՄԱՐՋՈՒԿ

Մայրս գնեց մի տիկնիկ,
Անուն — Գոհար, ի՜մ բալիկ:
Բայց մի շաբաթ չէր անցել,
Տիկնիկս արդեն ոտ չուներ:
Մայրիկս թե.—Անփո՛ւյթ ես,
Մի բան պահել չգիտես,
Տիկնիկն ինչո՞ւ ես տարել
Վառարանի մեջ դրել:
Լավ է՝ նրա փոխարեն
Քո մատները չես այրել...
Ու ես լալով ասացի.
— Գիտե՞ս, ոնց էր մրսել նա.
Մայրիկ, այնպե՜ս խղճացի,
Դրեցի, որ տաքանա...





# ՆՈՒՆՈՒԿԻ ՎԻՇՏԸ

ԼԵՅԼԻ

Փոքրիկ Նունեն բարկացած
Ու շատ տխուր եկավ տուն,
Գլխարկը շուտ գցեց ցած,
Շտապ հանեց վերարկուն:

Զուզեց նստել սեղանին,
Զուզեց ընթրել եղբոր հետ,
Զուզեց լինել Գեղամի
Սեղանակիցն այսուհետ:

Երբ որ մայրը հոգատար
Նրան հարցեր էր տալիս,
Սև աչերում արցունք կար,
Թեև Նունեն չէր լալիս:

— Նունե, ինչո՞ւ ես տխուր,
Նունե, ինչո՞ւ չես խոսում:—
Ու հեկեկաց Նունեն լուռ,
Թեև նա լալ չէր ուզում:

— Բակում Գեղամը իզուր
Քանդեց բույնը մրջյունի,
Վրան լցրեց կեղտոտ ջուր,
Մեր Գեղամը խիղճ չունի:

Քարով խփեց ձագուկին,
Խեղճը այնպե՜ս վնգստաց,
Քանդեց ծտի բույնը հին,
Ձագուկներին թափեց ցած:

Ու եկել է հիմա տուն,
Անհոգ նստել տատի մոտ,
Հանգիստ խմում է, ուտում,
Ո՛չ ահ ունի, ո՛չ ամոթ:—

Նունեն պատմում էր տխուր,
Արցունքներն էին հոսում.
Կանգնել ու լալիս էր լուռ,
Թեև նա լալ չէր ուզում:



# ՄՈՒԿՆ ՈՒ ԿԱԹԸ

Ա. ՇԻՐՈՅԱՆ

*Մլավում է փիսիկը,*
*Սուսիկ-մուսիկ փիսիկը:*
*Սոսիկը հարց է տալիս.*
*— Փիսիկ, ինչո՞ւ ես լալիս:*
*Փիսիկը շուրթն է լիզում.*
*— Միաո՜ւ, ես կաթ եմ ուզում...*
*Մայրը լսում է, ասում.*
*-- Օ՜, դու շատ բան ես ուզում.*
*Կաթը կտանք Սոսիկին,*
*Մուկն էլ՝ սուսիկ-փիսիկին:*



# Ժողովրդական






Զ. ԴԱՐՅԱՆ

Ծովում շատ ձկներ կան, անթիվ, անհամար, բայց այս զրույցը նրանցից մեկի՝ Բկլիկ-ձկնիկի մասին է։

Բկլիկ-ձկնիկը մոր հետ ապրում էր մեծ ժայռի խոռոչում։ Մայրը նրան հետը որսի էր տանում և սովորեցնում էր, թե ինչպես պիտի զգուշանալ թշնամիներից։

— Ամենից շատ վախեցիր Հոտավետ-մորքուրից,—ասում էր մայրը,—չխաբվես նրա անուշ հոտին ու չմոտենաս, թե չէ գլխիդ փորձանք կգա...

Այդ Հոտավետ-մորքուրը մայրիկից շատ երկար էր ու հաստլիկ, ապրում էր նրանցից մի քիչ հեռու։ Նա ամբողջ օրը տեղից չէր շարժվում, որսի չէր գնում, ոչ ոքի վրա




(Բենգալական)

Ժամանակով միասին ապրում էին արջը, խոզուկը, նապաստակը, չախկալը և առնետը։ Նրանք շատ համերաշխ ու երջանիկ էին։

Ինչ որ ճարում էին, միասին էին ուտում։

Մի անգամ իր կղզուց նրանց մոտ եկավ չար գայլը։ Նա իր հետ բերել էր թանկագին քարերով լի մի կապոց։

— Սա գայլն է,—ասաց արջը։—Նա շատ նախանձ ու ագահ է։ Զգուշացեք նրանից, թե չէ, մեծ փորձանքի մեջ կընկնեք։





# ՀԵՔԻԱԹՆԵՐ

չէր հարձակվում, շարունակ ժպտում էր անց ու դարձ անողներին, իսկ երբ բերանը բաց էր անում, այնպիսի մի անուշ բուրմունք էր տարածվում շուրջը, կարծես ծովը վարդաջրով լցվեր։ Մանր ձկներն ու շերեփուկները հոտն առնելով, ուրախ-ուրախ լողում էին դեպի Հոտավետ-մորքուրը և աչքները փակ լցվում նրա ահագին բերանը։

Բլլիկ-ձկնիկը հեռվից նայում էր Հոտավետ-մորքուրի ժպտացող աչքերին ու զարմանում, թե մայրիկն ինչու է արգելում մոտենալ նրան, մի՞թե այդ բարի մորքուրից փորձանք կարող է գալ։ «Էստեղ մի բան կա», մտածում էր Բլլիկը։

Մի առավոտ էլ Բլլիկ-ձկնիկը մայրիկից թաքուն տնից դուրս եկավ և լող տվեց դեպի Հոտավետ-մորքուրը։ «Ես արդեն մեծ եմ, կարող եմ չլսել մայրիկին», փքվեց իր մեջ Բլլիկը։ Դեռ հեռվից նրան տեսնելով, մորքուրն սկսեց քաղցր ժպտալ ու բերանը բաց անել։ Որ բերանը բաց արեց, ծովը լցվեց վարդաջրով, անուշ բուրմունքից Բլլիկը հարբեց և, ինքն էլ չիմացավ, թե ինչպես նետվեց մորքուրի բերանը։ Այնտեղ իր նման շատերը կային։ Այնպես տաք ու բուրումնավետ էր, որ բոլորն էլ շշմել էին, իսկ Բլլիկ-ձկնիկը պոչն էր շարժում և ափսոսում, որ այդքան ուշ է վայելում այս քաղցրությունը։ «Դե, իհարկե, մայրիկը նախանձում է Հոտավետ-մորքուրին», մտածեց Բլլիկը, և այն է՝ ուզում էր դուրս գալ, վազել դեպի մայրն ու բարկանալ վրան, երբ Հոտավետ-մորքուրը բերանը փակեց։ Բլլիկն ու մյուս ձկնիկները հրվեցին դեպի նրա կոկորդը։ Գնում էին մութ, խորդուբորդ տեղերով, մինչև որ հասան մի լայն խոռոչի, ուր շնչելու օդ չկար։ Բլլիկ-ձկնիկը ուշաղնաց եղավ։

Երևի հենց այստեղ էլ վերջանար Բլլիկի գլուխը, եթե քիչ հետո մի ահագին կետ ձուկ չանցներ այդ տեղերով և դնչով չխփեր Հոտավետ-մորքուրի մեջքին։ Իսկ որ խփեց, մորքուրը մեջտեղից երկու կես եղավ, Բլլիկ-ձկնիկը դուրս եկավ ծով ու սարսափահար վազ տվեց մոր մոտ։

— Ես քեզ ասում էի, որ ամեն քաղցր հոտի չխաբվես, գլխիդ փորձանք կգա,— ասում էր մայրիկը, պոչով շոյելով Բլլիկի ցաված մեջքը։

— Հավատացեք, որ ձեր ամենալավ բարեկամն եմ,— սկսեց գայլը.— ինձնից միայն օգուտ կգա ձեզ։ Տեսե՛ք, ձեզ համար ի՛նչ գեղեցիկ քարեր եմ բերել։

— Մենք քեզ լավ ենք ճանաչում և չենք ուզում քեզ հետ գործ ունենալ,— ասաց արջը։ Բայց չախկալն ու աղվեսը հափշտակվեցին թան—








## Երաշտահավն ու ծույլ տղան

Խակասական

Շատ շոգ էր։ Ծույլ տղան նստել էր գետափին ու լաց էր լինում։ Նա ուզում էր լողանալ, բայց չէր ուզում շորերը հանել և մտնել ջուրը։

Իսկ երաշտահավը ճախրում էր ջրի վրա, թրջում տոտիկները, թևիկներով չփչփացնում ջուրը և այդպես հովանում։ Նա շատ ուրախ էր։

— Երանի՜ ես լինեի, — նախանձով ասաց ծույլ տղան։

— Ինչ կա որ, — վրա բերեց երաշտահավը, — արի միասին լողանանք։

— Հա՛ էլի, բա որ խեղդվե՞մ։

— Իսկ դու բռնիր սեզերից։

— Բա որ ձեռքս կտրե՞մ։

— Իսկ դու կաշվե ձեռնոց հագիր։

— Բա որ ձեռնոցը թրջվի՞։

— Ոչինչ, արևով կչորացնես։

— Արևի տակ կկոշտանա և հետո էլ կըպատռվի։

— Էն ժամանակ կվերցնես ասեղ ու թել և կկարկատես։

Ծույլիկը ձանձրացավ այդ երկար խոսակցությունից։ Նա մի քար վերցրեց ու գոռաց.

— Հալա էս ճտիկին, որ ինձ ուզում է բան սովորեցնել։

Նա ձեռքը մեկնեց, որ քարով խփի երաշտահավին, բայց ոտքը սահեց ու ընկավ ջուրը։ Իսկ երաշտահավը թռավ-գնաց, որ բոլոր թռչուններին պատմի այն մասին, թե ինչպես ինքը դաս ավեց ծույլ տղային։

Եվ բոլոր թռչունները միաբերան ասացին.

— Էլ երբեք նա թող չծուլանա՛ ու չբարկանա։ Դեռ լավ է, որ նա ծանծաղ գետն է ընկել։ Մի ուրիշ անգամ կարող է շմփալ կեղտոտ ջրափոսի մեջ։

## Մուկը



(Չեխական)

Մի անգամ մուկը դուրս եկավ գրոանքի և չորացած պանրի կտոր գտավ։ Մուկը ու-

կացին քարերով։ Նրանք լքեցին իրենց ընկերներին և գնացին գայլի մոտ։

Գայլը խժռում էր նրանց բաժին ուտելիքը և երկուսին էլ սոված էր թողնում։ Ու նրանք շատ շուտով հասկացան, թե ինչ է ուզում իրենցից այդ ագահ գայլը։





տում էր ու ոչինչ չէր նկատում։ Կամաց մոտեցավ կատուն, բռնեց նրան և ասաց.

— Դեն գցիր պանիրը, ես քեզ պիտի ուտեմ։

Մուկը նայեց և, տեսնելով, որ կատվի փոքրիկ ձագ է, որոշեց խաբել նրան։

— Լավ, կեր ինձ,— ասաց մուկը,— բայց իմացիր, որ ես քեզ չէի նկատել, և դու թաքուն եկար ու բռնեցիր ինձ։ Դա շատ հեշտ է։ Ասենք, դու վազել չես էլ կարող։ Եթե կարողանայիր, ապա կընկնեիր ետևիցս և կբռնեիր։

Կատվի ձագը վիրավորվեց։

— Ե՞ս չեմ կարող վազել, դե արի փորձենք։ Մենք դեռ կտեսնենք, թե մեզնից ով է արագ վազում։

Սկսեցին վիճել։ Կատվի ձագն ասաց.

— Առաջ դու՛ վազիր, այ, մինչև այն անկյունը, իսկ ես կհաշվեմ ժամանակը։ Հետո էլ ես կվազեմ։

Կատվի ձագն սկսեց հաշվել.

— Մեկ, երկու, երեք...

Մուկը վազեց մինչև անկյունը և պո՛ւկ... մտավ իր բույնը։

Տանը նա այդ մասին պատմեց իր ձագուկներին, որոնք կուշտ ծիծաղեցին հիմար կատվի վրա։




(Բրիտանական Գվիանայի հնդիկների ժողովրդական հեքիաթ)

Մի անգամ եղնիկը շրջում էր անտառում և հանդիպեց կրիային։ Դա եղել է շատ ու շատ տարիներ առաջ։ Այն ժամանակ կրիան սմբակներ ուներ, իսկ եղնիկը՝ այժմյան կրիաների նման ճանկավոր թաթեր։

— Ի՜նչ գեղեցիկ սանդալներ ունես, բարեկամ,— ասաց եղնիկը։ — Կտա՞ս փորձեմ։

Կրիան ուրախացավ։

— Իհարկե, կտամ,— պատասխանեց նա,— ինչո՞ւ չպիտի տամ։

Եվ կրիան սկսեց փորձել ճանկավոր թաթերը, իսկ եղնիկը՝ սմբակները։ Եղնիկը հագավ և ոտքի ելավ։ Սմբակները մագիլներից ավելի հարմար էին։

— Սրանցով հեշտ է վազելը,— ասաց եղնիկն ու փախավ։

— Ինչպե՞ս ազատվենք գայլից,— ասաց առնետը։

— Արի վերադառնանք մեր նախկին ընկերների մոտ,— առաջարկեց չախկալը։



Արջը ուրախ-ուրախ դիմավորեց նրանց և ասաց.

— Եթե մենք խոսքերս մեկ չանենք և այստեղից չվռնդենք գայլին, նա մեր հոտն էլ կկտրի աշխար-



Կրիան հագավ մագիլները։ Փորձեց վազել, բայց գետին ընկավ։ Մագիլներով վազելը շատ դժվար էր։ Երկար չարչարվելուց հետո կրիան նստեց ծառի տակ։ «Այստեղ կսպասեմ, հիմա եղնիկը ետ կգա», մտածում էր նա։ Բայց եղնիկը մինչև այսօր էլ չի եկել, որպեսզի վերադարձնի կրիայից վերցրած սմբակները։




(Տիբեթական)

Մի անգամ գայլը ընկավ որսորդի փորած փոսը և սկսեց իր ոռնոցը.

— Օգնեցե՛ք, օգնեցե՛ք։

Մոտերքով մի խոյ էր անցնում, և գայլը խնդրեց նրան՝ ազատել իրեն։

— Ո՛չ, եթե ազատեմ քեզ, դու կուտես ինձ։

— Երդվում եմ, որ քեզ վնաս չեմ տա,— ասաց գայլը։

Խոյը հավատաց գայլին և նրան հանեց փոսից։ Դուրս գալուն պես գայլը ասաց.

— Դու փրկեցիր իմ կյանքը, հիմա փրկիր քաղցից։

— Բայց դու երդվեցիր, որ ինձ վնաս չես տա։

— Ես ծնվածս օրից մսով եմ սնվում,— մռնչաց գայլը,— էլ ինչպե՞ս կարող եմ խընայել քեզ։

Խոյը հասկացավ, որ նրանից ազատվել չի լինի։ Բայց այդտեղ տեսավ Նապաստակին։

— Իմաստուն Նապաստակ, խնդրում եմ ինքդ անես մեր դատը։

Նապաստակը լսեց երկուսին էլ և ասաց.

— Բայց արդյոք դուք ճի՞շտ պատմեցիք եղելությունը։ Այժմ կատարեք այն, ինչ պատահել է, որպեսզի ես ինքս տեսնեմ իմ սեփական աչքերով։

Գայլը թռավ փոսը և սկսեց խնդրել խոյին, օգնել իրեն։

— Ապերախտ գազան, սպասիր մինչև որսորդը գա,— ասաց Նապաստակը և խոյի հետ հեռացավ

հից։ Մենք հաշտ ու խաղաղ էինք, բայց նա եկավ ու խռովեց մեր հանգիստը։

Ասելն ու անելը մեկ եղավ։ Միասնական ուժերով նրանք գայլին վռնդեցին իրենց երկրից։

Գայլը հազիվ կարողացավ գլուխն ազատել և փախչել իր կղզին։





# ԲՐԴՈՏ ԱՊԵՐՆ ՈՒ ԾԽԱՄՈՐՃԸ

Ս. ՄԻԽԱԼԿՈՎ

(Հեքիաթ)

Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

*Մի օր անտառապահը անտառում կորցրեց իր ծխամորճը, ծխախոտով լի քսակը և ինքնաշեն վառիչը։ Արջը գտավ դրանք և սկսեց ծխել։ Ծխամորճին այնպես ընտելացավ, որ երբ քսակի ծխախոտը վերջացավ, սկսեց խոտով ծխել։*

*Առաջ արջն արևի հետ զարթնում էր, կանաչներում գլուխկոնծի տալիս, թարմանում, վազում էր գետը լողանալու և ձուկ բռնելու, ապա մտնում մորուտ, կամ խլխլում փչակները՝ մեղր որոնում, իսկ հիմա՝ դեռ լույսը նոր բացված, ծխամորճը լցնում է խոտով, կոխում բերանը, չրթացնում վառիչը և, թիկն տալ պառկելով, օղակ-օղակ ծուխը բաց թողնում։ Այսպես էլ անց է կացնում օրը ծխամորճի ամպերի մեջ, թավալ գալով։*

*Բայց դա դեռ ոչինչ։ Բանն այն է, որ Բրդոտ Ապերն սկսեց տկարանալ։ Մի անգամ էլ, երբ նա անցնում էր անտառի եզրով, հանդիպեց աղվեսին։ Սա որ արջին տեսավ, հառաչեց։*

ԱՂՎԵՍ — Դու ես, բարով, Բրդոտ Ապեր,
Վաղուց է որ, չենք հանդիպել։
Վա՜յ, տնաշեն, կմախք ես չոր,
Բան չես կերել տարին բոլոր։
Հիվանդ ես չէ՞ս, ասա տեսնենք։

ԱՐՋ — Է՜հ, գլուխ չեմ հանում երբեք.
Լավ չի ոնց որ բեֆըս մի քիչ,
Ցավ եմ զգում կողիս, մեջքիս,
Բուրդըս թափվում է շարունակ,
Ախորժակս էլ փակ է ու փակ։
Փորձում եմ շուտ քնել մի քիչ,
Բայց չէ, քուն չի գալիս աչքիս,
Հազն է խեղդում առավոտյան,
Սիրտս է խառնում երեկոյան,
Ու դողում են թաթերս էսպես։

ԱՂՎԵՍ — Լավ, փայտփորին չե՞ս դիմել հեչ։
Իզուր. դիմիր դու այսուհետ.
Նա որ տեսնի, իսկույն ևեթ
Կրացատրի քեզ ամեն բան։
Ա՛յ, ուրեմն դիմիր նրան։

ԱՐՋ — Լավ, թող անցնի դեռ մի շաբաթ,
Թե վատացա, կանեմ ես այդ։

*Անցավ մի շաբաթ, երկու, և արջը քիչ-քիչ ավելի վատացավ։ Մի անգամ էլ, երբ անցնում էր ձորով, գայլին հանդիպեց։ Գայլը հենց որ արջին տեսավ, զարմանքից նստեց ետևի թաթերին։*

ԳԱՅԼ — Լսիր, ինչ է եղել քեզ,
Որ ամբել ես դու այդպես,
Մորթըդ բուրդը թողել է,
Ցցվել են քո կողերը,
Հիվանդ ես չէ՞ս, տնաքանդ։

ԱՐՋ — *(Տխուր ձայնով)*։ Այո, հիվանդ եմ, հիվանդ։

ԳԱՅԼ — Ի՞նչ է եղել, ինչ կա որ։

ԱՐՋ — Էհ, ի՞նչ ասեմ, այ քավոր։
Լավ չի ոնց որ բեֆըս մի քիչ,
Ցավ եմ զգում կողիս, մեջքիս,
Բուրդըս թափվում է շարունակ,
Ախորժակս էլ փակ է ու փակ։
Փորձում եմ շուտ քնել մի քիչ,
Բայց չէ, քուն չի գալիս աչքիս,
Հազն է խեղդում առավոտյան,
Սիրտս է խառնում երեկոյան,
Ու թաթերս են դողում էսպես։
Կորած եմ ես...

ԳԱՅԼ — Այո, կորած։

ԱՐՋ — *(Տխուր ձայնով)*։ Կորած եմ ես...

ԳԱՅԼ — Անդարձ կորած,
Թե փայտփորի մոտ չգնաս։
Պետք է նրան դիմել հիմա.
Մի էնպիսի բժշկուն է նա,
Որ ամեն բան իսկույն կասի
Ցավիդ մասին։

ԱՐՋ — Լավ, հենց վաղը ես կգնամ։

ԳԱՅԼ — Բայց կգտնես արդյոք նրան։

ԱՐՋ — Դե, կգտնեմ...



*Արջը անտառում փնտրեց փայտփորին ու գտավ։ Նա փչակ էր շինում ծեր սոճու բնին։ Արջը մոտեցավ սոճուն և գունչը վեր ցցեց։*

ԱՐՋ — Քույրիկ, քույրիկ իմ սիրասուն,
Ներքև իջիր, բան եմ ասում։

ՓԱՅՏՓՈՐ — Պա՜հ, այդ դո՞ւ ես, Բրդոտ Ապեր,
Բարև, քեֆ-հալ...

ԱՐՋ—Ո՜ւֆ, չե՞ս տեսնում ոնց եմ տկար:
Բարակում եմ, սմքում քիչ-քիչ,
Ցավ եմ զգում կողիս, մեջքիս,
Բուրդըս թափվում է շարունակ,
Ախորժակս էլ փակ է ու փակ:
Վաղ եմ պառկում, որ քուն մտնեմ,
Աչք չեմ փակում մինչ լուսադեմ,
Առավոտյան հազն է խեղդում,
Երեկոյան՝ սրտխառնություն,
Ու քաքերս են դողում էսպես:
ՓԱՅՏՓՈՐ—Մխո՜ւմ ես դու, խմո՜ւմ նույնպես:
ԱՐՋ—Մխում եմ, հա: Քեզ ո՞վ ասաց:
ՓԱՅՏՓՈՐ—Բերնիդ հոտից հասկացա պարզ:
Հապա նստիր կոճղի վրա,
Ու թիկունքդ իմ կողմն արա:
Դե, Ապոլը քեզ պես հսկա
Քննելը հեշտ չի այնքան:
Սուս, ա՛յ, այսպես: Պահիր շունչդ:
Չէ, Ապեր ջան, գործդ լուրջ է:
Հիմա պարզ է մեզ ամեն բան:
ԱՐՋ—*(Վախեցած)*: Վա՜յ, ես արդեն մո՜տ եմ մահվան:
ՓԱՅՏՓՈՐ—Թոքերումդ կա մրի դեզ,
Մխելուցն է կիտվել այդպես:
Թե ուզում ես ապրել երկար,
Պիտի թողնես ծխելն իսպառ:
ԱՐՋ—*(Խեղճ ձայնով)*: Ո՞նց թե, նետեմ իմ կրակը,
Խազալով լի իմ քսակը,
Մխամո՛րճերս նետեմ անդարձ:
ՓԱՅՏՓՈՐ—Հա, իմ սրտանց խորհուրդն է այս:
Իսկ թե չանես, ինձ կհիշես,
Երբ ոտներդ արդեն փռես:

*Արջը փայտփորին շնորհակալություն հայտնեց տված խորհրդի համար և ոտները քարշ տալով գնաց: Երբ հասավ տուն, կուչ եկավ մի կոճղի վրա, հանեց ծխամորճը, լցրեց խաղալով և հենց որ ուզեց ծխել, հիշեց, թե բաժանվելիս ինչ ասաց փայտփորը, հիշեց և ծխամորճը նետեց խորունկ ձորը: Չըծխեց մի օր, երկու օր: Երրորդ օրն էլ չհամբերեց, իջավ ձորը՝ ծխամորճը փնտրելու: Փնտրեց, փնտրեց, մի կերպ գտավ: Քսեց, մաքրեց մորթու վրա, խաղալով լցրեց, կոխեց երախը, չրթացրեց վառիչը և սկսեց ծխել: Հենց նոր էր սկսել ծուխը օղակ-օղակ բաց թողնել, մեկ էլ լսեց, թե ինչպես փայտփորը սոճու վրա տկտկացնում է. տո՛ւկ-տո՛ւկ, տո՛ւկ-տո՛ւկ, տո՛ւկ-տո՛ւկ:*

*Այստեղ արջը նորից հիշեց փայտփորի խորհուրդը, հիշեց, բերնից հանեց ծխամորճը և նետեց ձորը, այս անգամ՝ ավելի հեռու:*

*Չծխեց մի օր, երկու օր, երեք օր: Չորրորդ օրն էլ չհամբերեց, իջավ ծխամորճը փնտրելու: Փնտրեց, փնտրեց, մի կերպ գտավ: Ձորից դուրս եկավ՝ ոտքից գլուխ փշերով ու կռատուկով ծածկված, նստեց կոճղին, ծխամորճը քսեց, մաքրեց մորթու վրա, լցրեց խաղալով, սկսեց ծխել: Նստած այդպես ծխում է, բայց ականջը ձայնի. հո փայտփորը մոտերքում չի՞:*

*Ամբողջ աշունը, մինչև ձմեռ արջն այսպես և՛ թողեց, և՛ չթողեց ծխելը: Եկավ ձմեռը: Մի անգամ անտառապահը գնում էր ճանապարհով, իսկ շունը՝ ծառերի միջով. Նապաստակի հետքեր էր հոտոտում: «Չլինի՞ թե մի բան է տեսել», մտածեց անտառապահը, երբ լսեց շան հաչոցը: Նա կանգնեցնելով ձին, իջավ սահնակից, հագավ դահուկները և սլացավ շան հաչոցի ուղղությամբ: Նետվեց թավուտը, ելավ բացատը, տեսավ տապալված մի եղևնի, որ հողից արմատներով դուրս էր եկել, իսկ հենց արմատների մոտ՝ ձյան կույտ և արջի բույն: Բնից կապույտ ծուխ էր ելնում: Անտառապահը զարմացավ, երբ ծուխը տեսավ: Նա արջին բարձրացրեց, իսկ սա ծխելուց այնպես էր թուլացել, որ կապելու կարիք էլ չկար: Խեղճը կանգնել էր անտառապահի դիմաց և թաթերի վրա օրորվում էր: Աչքերը ծխից ջրակալել էին, բուրդը գզգզված էր, իսկ ատամների մեջ կար մի ծխամորճ: Անտառապահը ճանաչեց իր ծխամորճը, հանեց արջի բերնից, նայեց բույնը, վառիչն ու քսակն էլ գտավ: Այդ արդեն բնավ չէր սպասում:*

*Անտառապահը գտածը դրեց մուշտակի գրպանը, արջին քարշ տվեց—գցեց սահնակի վրա, ճամփա ընկավ դեպի տուն: Կինը, տեսնելով, որ մարդը եկավ անտառից, վազեց պատշգամբ:*

ԿԻՆԸ—Ձեզյա, էսօր էդ ի՞նչ բերիր:
ՄԱՐԴԸ—Դե, չե՞ս տեսնում, արջ է էլի:
ԿԻՆԸ—Ո՞նց, իսկակա՜ն:
ՄԱՐԴԸ—Բա, իսկական: Գիտե՞ս, ծխո՜ղ սրիկան:
ԿԻՆԸ—Լավ, բայց դրան ի՞նչ անենք:
ՄԱՐԴԸ—Դե, զոոպարկ կտանենք:

*Եվ անտառապահը արջին գազանանոց տարավ:*



Զոոպարկում կա մի արջ,
Կուզես տեսնել, եկ առաջ,
Շրջում է ժիր ու հպարտ,
Վրան մի թիզ թանձր բուրդ,
Եվ ասում են, որ մինչ այդ
Նա ծխող է եղել քունդ:
Իսկ ով շուրթին ծխախոտ,
Կանգ է առնում նրա մոտ,
Նա դեռ հեռվից հոտն առնում,
Գազազում է, գռմռում,
Ու թաթերը զայրագին
Թփփացնում է հատակին,
Որովհետև Բրդոտը
Չի հանդուրժում այդ հոտը:

*Փոխադր. Հ. ՀԱՐՅԱՆ*

# ՆՈՐ ԳՈՐԾԵՐ, ՆՈՐ ՍԽՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Բարձր դասարանի աշակերտները դեռ վերջին քննությունններն էին հանձնում, դեռ դպրոցում երբեմնակի հնչում էր զանգի ախորժալուր ձայնը, բայց № 16 տան բակում արդեն եռուզեռ էր, սկսվել էին քաղաքային ճամբարի կազմակերպման աշխատանքները: Մի տեղ փոս էին փորում ու ցեմենտ շաղախում, որպեսզի կանգնեցնեն ճամբարային դրոշի կայմը, մյուս կողմում փոք-



րահասակ երեխաները բակի քարերն էին մաքրում, իսկ խորքում մի խումբ տղաներ վոլեյբոլի ցանց էին կապում: Հետո 7-րդ դասարանցիները հանձնեցին վերջին քննությունները և բակում սկսեցին կառուցել պիոներական կամ, ինչպես իրենք էին ասում, «շտաբի» սենյակը: Ճիշտ է, նաև վեճ եղավ: Երեխաները վիճում էին, թե ինչով պատրաստեն սենյակը՝ տախտակներո՞վ, թե աղյուսով: Տնային կառավարիչը թույլ տվեց, որպեսզի ճեղնահարկում վաղուց արդեն կուտակված, չօգտագործվող աղյուսը ցած բերեն: Երեխաների շարքը ճեղնահարկից մրջյունի նման ձգվեց մինչև բակ և շատ չանցած արդեն թրծված աղյուսի մի մեծ կույտ էր կուտակվել բակում: Հետո նրանք լրացուցիչ աղյուս թափեցին կա-

«Չէ՞ որ մարմինը պետք է մանկուց կոփել», այսպես է մտածում Բելլա Սարգսյանը: (Երևանի Ս. Շահումյանի անվան դպրոց):

«Շատ զվարճալի ու հետաքրքիր թռչուններ են աղավնիները: Ես սիրում եմ նրանց հետ զբաղվել», ասաց Աիդան, երբ նրան հարցրին իր խնամած աղավնիների մասին: (Երևանի Ե. Չարենցի անվան դպրոց):

վահողից, ու բակում բարձրացավ պիոնարական սենյակը, գեղեցիկ ներկված պատուհաններով ու դռնով:

Շատ հետաքրքիր անցավ ամառը՝ և՛ խարույկներ վառեցին, և՛ էքսկուրսիաներ կազմակերպեցին, և՛ սպորտ խաղեր անցկացրին: Բայց ահա եկավ աշունը: Երեխաները սկսեցին դպրոց հաճախել, և բակը մի տեսակ դատարկվեց, տխրեց, քանդեցին վոլեյբոլի ցանցը, չորացավ գեղեցիկ, կլոր ջրավազանը, ուր հաճախ լողանում էին երեխաները, իսկ «շտաբի» լուսամուտներն ու դուռը, չգիտես ինչու, մնացին բաց և քամու հարվածով իզուր տեղը բաց ու խուփ էին լինում: Իսկ բակի մեջտեղում, վեր սլացած կայմի կատարին ամրացրած աստղը խունացավ, գույնը գցեց: Դասերից հետո բակ իջնող երեխաները նայում էին լքված սենյակին, մենավոր կայմին և տխրությամբ հիշում ամռան ուրախ ու հետաքրքիր օրերը:

Մի օր էլ Արամն ասաց.

— Իսկ ինչո՞ւ միայն ամառը, մի՞թե ձմռանը չի կարելի նույնն անել, մի՞թե հնարավոր չէր ջոկատը պահպանել:

Տղաներն իրար նայեցին: Իսկապես, մի՞թե հնարավոր չէր: Ինչքա՜ն լավ կլիներ: Չէ՞ որ շենքում ապրող գրեթե բոլոր երեխաներն էլ միևնույն դպրոցում են սովորում: Երեխաները խոսեցին իրար մեջ, այդպես էլ լռեցին, որովհետև ոչ ոք ընդառաջ չգնաց նրանց:

Բայց մենակ № 16 շենքում ապրող երեխաները չէին այդպես մտածում: Այդպես էին մտածում շատ երեխաներ Մոսկվայում, Կիևում, Թբիլիսիում, իսկ Լենինգրադի Գավանսկայա փողոցի № 71 տանը 1957 թվականին այդպիսի մի ջոկատ կազմակերպեցին: Նրանց հետևեցին նույն փողոցի № 9 տան բակում ապրող երեխաները և էլի շատ ուրիշներ:

Ինչքա՜ն հետաքրքիր գործեր կատարեցին նրանք: Փորձը ցույց տվեց, որ այդպիսի ջոկատները շատ օգտակար են: Եվ ահա անցյալ տարվա նոյեմբերին կայացած ՀամԼԿԵՄ Կենտկոմի պլենումը որոշում ընդունեց, որ այդպիսի ջոկատներ ստեղծվեն ամենուրեք՝ և՛ հիմնարկների ակումբներում, և՛ սովխոզներում, և՛ կոլխոզներում, և՛ տնային կառավարչություններին կից: Այդպիսի ջոկատները կմտնեն դպրոցի պիոներական դրուժինաների մեջ և պիոներական աշխատանքն ավելի հետաքրքիր կդառնա:

Բայց ՀամԼԿԵՄ Կենտկոմը ուրիշ



Ամեն անգամ Գոյանեին, Վերային և Վարդանին անսահման ուրախություն են պատճառում հեռավոր բարեկամներից ստացված նամակները: Շուտով նրանց պատասխան նամակը կուղարկվի հեռավոր Չեխոսլովակիայի Պրագա քաղաքը: (Երևանի № 28 դպրոց):

շատ հարցեր առաջ քաշեց պիոներական կազմակերպությունների աշխատանքները բարելավելու համար: Իհարկե, մինչև այժմ էլ պիոներները շատ հետաքրքրական գործեր են կատարել, բայց մեր պարտիան, կոմերիտմիությունը ամեն ինչ անում են, որ ավելի հետաքրքիր անցնի երեխաների կյանքը, ավելի լավ հանգստանան նրանք, լավ սովորեն ու մեր Հայրենիքի համար պիտանի մարդ դառնան: Իսկ մինչև պլենումի որոշումները շատ թերություններ կային պիոներական աշխատանքում:

Ա՛յ, օրինակ՝ Արփիկը, որ իրենց ջոկատի երրորդ օղակի օղակավարն է, մի անգամ դժգոհում էր: Օղակի պիոներներից շատերի որոշմամբ պետք է նրանք կոլտնտեսության թռչնաֆերմայի համար ճուտեր աճեցնեին, իսկ Սուրիկն ու Արգամը չէին ուզում, նրանք ուզում էին առաջին օղակի պիոներների նման հորթեր խնամել:

— Դե ինչպե՞ս կարելի է թույլ տալ, որ նրանք հորթերով զբաղվեն, առանց այն էլ մեր օղակի պիոներները քիչ են,— բողոքում էր Արփիկը:

— Իսկ եթե նրանք հորթեր ավելի շատ են սիրում,— ասում էր Արփիկի հայրը, որ կոլտնտեսության ֆերմայում էր աշխատում: Ա՛յ, ես տեսնում եմ, թե նրանք ինչպես են հետևում հորթերին, ամեն օր թարմ խոտ են բերում, մաքրում են նրանց, ջուր տալիս:

— Ի՛նչ անեմ, նրանք մեր օղակից են:

Արփիկն, իհարկե, իրավացի չէր, բայց ի՛նչ կարող էր անել: Չէ՞ որ իրոք Սուրիկն ու Արգամը նրանց օղակից էին, միևնույն կենտրոնական շարքում:

Այս մասին էլ է ասված պլենումի որոշման մեջ: Իսկ ինչո՞ւ պիտի ջոկատում ըստ շարքերի օղակներ կազմվեն, ավելի լավ չի՞ լինի, որ Սուրիկն ու Արգամը գնան առաջին օղակ, իսկ այնտեղից երկու հոգի գան Արփիկենց օղակը: Այսպես գործն ավելի հաջող կընթանա: Լինում են այնպիսի օղակներ, ուր ամեն պիոներ մի ձգտում ունի, բայց ստիպված կատարում է իր չսիրած գործը: Համաձայն պլենումի որոշման այսուհետև օղակներ կկազմվեն ըստ ցանկության, կլինեն նաև ժամանակավոր օղակներ:

* * *

Լալիկը նստել է պատուհանի գոգին ու նայում է դուրս, բակում շարված պիոներներին: Նրանք ինչ-որ տեղ են գնալու: Ա՛յ, նրանք շուռ եկան և ուրախ երգելով գնացին բակից: Լալիկը դժգոհ է: Իրեն չտարան, «Պիոներ չես» ասացին: Ի՞նչ անենք, որ պիոներ չի, բայց չէ՞ որ երկրորդ դասարանում է: «Զարմացրեց,— մտածում էր Լալիկը,— մի տարի է մեծ, է՛լի»:

Լալիկի նման երեխաներ քիչ չեն, գրեթե բոլորը, ովքեր սովորում են առաջին և երկրորդ դասարաններում: ՀամԼԿԵՄ Կենտկոմի պլենումը նրանց մասին էլ է մտածել: Այսուհետև պիոներական դրուժինաներին և ջոկատներին կից կլինեն հոկտեմբերիկների խմբեր: Ցանկացող ամեն մի երեխա կարող է հոկտեմբերիկ դառնալ: Այսուհետև Լալիկն այլևս չի տխրի:

Կոմերիտական և պիոներական կազմակերպությունները իրագործելով պլենումի որոշումները, ավելի հետաքրքիր, ավելի գրավիչ կդարձնեն լենինյան պիոներների, սովետական երեխաների երջանիկ կյանքը:

Լուսանկարները՝ Վ. ՍԵՎՈՑԱՆԻ



Չորրորդ դասարանցիներ Ռոզան ու Սոնիկը ազատ ժամերին հաճույքով պարապում են ձեռագործի խմբակում: (Երևանի Հ. Աճառյանի անվան դպրոց):

# ԼԵՆԻՆ ՊԱՊԻ ԹՈՌՆԻԿՆԵՐԸ

Շատ երեխաներ հարցնում են. «Ովքե՞ր են հոկտեմբերիկները և ինչո՞ւ են նրանք այդպես կոչվում»:

Ուրեմն լսեք: Քառասուն տարի առաջ բանվորներն ու գյուղացիները բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ քշեցին կապիտալիստներին ու կալվածատերերին և իրենք սկսեցին կառավարել մեր երկիրը: Անում էին բանվորների ու գյուղացիների երեխաները: Նրանք էլ էին ուզում օգնել մեծերին նոր կյանքը կառուցելու գործում, ուզում էին իրենց կազմակերպությունն ունենալ: Հետո կոմերիտականներն սկսեցին իրենց կրտսեր եղբայրների ու քույրերի համար պիոներական ջոկատներ կազմակերպել: Ուրախ էր կյանքը այդ ջոկատներում: Պիոներները իրենց տոներն ունեին, երգեր էին երգում, համեբաշխ շարքերով քայլում էին փողոցներով, գնում էին շաբաթօրյակների, մետաղի լոմ էին հավաքում, ամեն ինչում օգնում էին մեծերին: Իսկ ավելի փոքրերը՝ 7, 8, 9 տարեկանները, միայն նախանձում էին պիոներներին: Նրանք անընդհատ անհանգստացնում էին իրենց քույրերին ու եղբայրներին, ասում էին, որ իրենք էլ են ցանկանում պիոներ դառնալ, ընդօրինակում էին նրանց՝ երգում էին միևնույն երգերը, գալիս էին հավաքույթներին, միշտ խմբվում էին պիոներական ակումբների մուտքի մոտ և բողոքում էին ծնողներին, որ ջոկատում իրենց չեն ընդունում: Ծնողները ավելի հաճախ էին գալիս ջոկատ և ժողովներում ասում էին, որ 7, 8, 9 տարեկան երեխաներին էլ է հարկավոր կազմակերպել: Հենց այդ ժամանակ էլ որոշեցին պիոներական ջոկատներին կից ստեղծել փոքրահասակ երեխաների խմբեր: Սկսեցին մտածել, թե ինչպե՞ս կոչեն այդ երեխաներին: Մոսկվայի պիոներներն առաջարկեցին նրանց անվանել հոկտեմբերիկներ՝ ի պատիվ Մեծ Հոկտեմբերի: Չէ՞ որ այդ փոքրիկները ծնվել ու մեծացել էին Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի տարիներին, Հոկտեմբերի հասակակիցներ էին: Հոկտեմբերիկներին ընդունում էին պիոներական ջոկատներին կից խմբերում: Խմբերը բաժանվում էին աստղիկների՝ ի պատիվ մեր դրոշի վրա վառվող կարմիր աստղի: Քանի ծայր որ ունի աստղիկը, այնքան էլ հոկտեմբերիկ էր ընդգրկվում նրա մեջ, չհաշված աստղավարին ու նրա օգնականին:



— Ես արդեն հոկտեմբերիկ եմ,— հպարտությամբ ասում է առաջինդասարանցի Ալվարդը (Խ. Աբովյանի անվան դպրոց):

Հոկտեմբերիկների խմբերն աշխատում էին ջոկատներին կից, իսկ խմբի աստղավարը ավագ պիոներ կամ կոմերիտական էր: Նա մտնում էր պիոներական ջոկատի խորհրդի մեջ:

Հոկտեմբերիկներն իրենց օրենքներն ունեին: Նրանցում ասվում էր.

Հոկտեմբերիկներն օգնում են պիոներներին, կոմերիտականներին, կոմունիստներին, բանվորներին ու գյուղացիներին:

Հոկտեմբերիկները լավ են սովորում դպրոցում և սիրում են աշխատել:

Հպարտանում էին հոկտեմբերիկներն իրենց անունով և միշտ աշխատում էին որքան կարելի է լավ կատարել իրենց սովորությունները: Այդ սովորությունները այսպիսին էին.

Հոկտեմբերիկը արթնանում է վաղ առավոտյան, լվանում է դեմքը, վիզը, ականջները, մաքրում է ատամները:

Հոկտեմբերիկը աշխատանքից և խաղից հետո հավաքում է իր թափած իրերը, հետևում է մաքրությանն ու կարգին:

Հոկտեմբերիկը խնամքով է վարվում գրքերի, հագուստի և այլ իրերի հետ:

Հոկտեմբերիկներն ունեին իրենց երգը «Մենք ուրախ ենք ու երջանիկ, մեզ կանչում են հոկտեմբերիկ»: Այդ երգը այժմ էլ սիրում ու երգում են բոլոր դպրոցներում:

Ա՛յ, դուք արդեն իմացաք, թե ովքեր են եղել հոկտեմբերիկները և ինչով են նրանք զբաղվել: Իսկ հիմա խոսենք ձեր մասին: Չէ՞ որ դուք էլ հոկտեմբերիկներ եք՝ պիոներների փոքրիկ օգնականները: Ձեզնից ամեն մեկն անպայման ուզում է պիոների նմանվել, իսկ երբ ջոկատ մտնելու ձեր հերթն էլ հասնի, պիոներները կօգնեն ձեզ այդ գործում: Նրանք ձեզ կսովորեցնեն աշխատել, ինքնաշեն խաղալիքներ պատրաստել, ծաղիկներ խնամել, իրենց հետ ձեզ կտանեն սերմեր, կաղին, հին թղթեր հավաքելու, կսովորեցնեն չմուշկներով սահել, զանազան խաղեր խաղալ: Նրանք ձեզ հետ նկարներ կանեն, պլաստիլինից իրեր կքանդակեն և ուրիշ շատ ու շատ հետաքրքիր գործերի մասնակից կդարձնեն ձեզ:

Հոկտեմբերիկը պետք է սիրի իր դպրոցը, հարգի մեծերին, լինի կարգապահ դպրոցական՝ Լենին պապիկի իսկական թոռնիկը:

# Լինենք քաղաքավարի

## ՁԵՐ ՏՈՒՆ ՀՅՈՒՐԵՐ ԵՆ ԵԿԵԼ

Երկու տուրիստներ ճանապարհորդում էին Կովկասի լեռնային շրջաններում: Մի անգամ նրանք ստիպված եղան գիշերել հեռու լեռներում ծվարած գյուղերից մեկում: Տանտերը, որին հյուր էին տուրիստները, մի պարզ ու հասարակ լեռնցի էր: Նա հյուրերին ուրախ դիմավորեց և առանց հարցնելու՝ քաղցած են, թե ոչ, սեղանին դրեց բազմապիսի ուտելիքներ՝ ինչ որ տանը կար: Իսկ երբ առավոտյան հյուրերը պատրաստվում էին հեռանալ, տանտերը կրկին չհարցրեց, թե արդյոք գիտե՞ն նրանք ճանապարհը մինչև հաջորդ գյուղը: Նա ուղղակի առաջ անցավ և ուղեկցեց նրանց լեռնային վտանգավոր արահետներով:

Տուրիստները զարմացան. տանտերը շատ զբաղված է, էլ ո՞ւր է իր գործերը թողել ու եկել իրենց ճանապարհ գցելու:

— Իզուր եք զարմանում,— վիրավորվեց լեռնցին:— Ես չեմ կարող ձեզ մենակ թողնել այս վտանգավոր տեղերում: Հանկարծ ձեզ հետ մի բան պատահի, այն ժամանակ ես էլ, իմ տունն էլ խայտառակ կլինենք: Չէ՞ որ դուք իմ հյուրերն եք…



Դա իսկական հյուրասեր մարդ էր:

Քո հյուրերին, սիրելի ընթերցող, իհարկե, ոչ մի վտանգ չի սպառնում, սակայն որպես տանտեր, այնուամենայնիվ, դու շատ պարտականություններ ունես: Երբևէ մտածե՞լ ես, արդյոք, թե ինչպես ես ընդունել քո հյուրին: Չի՞ պատահել այսպիսի դեպք. հյուրը առաջարկում է.

— Արի պատեֆոնը միացնենք:

Իսկ տանտերը ձեռքը թափ է տալիս:

— Է՜, թող: Ես երաժշտություն չեմ սիրում:

Դա վատ տանտեր է: Լավ տանտերը կկատարի հյուրի խնդրանքը, նույնիսկ եթե դա իրեն այնքան էլ հաճելի չէ:

Կամ այսպիսի դեպք:

Աղջկա մոտ է եկել նրա ընկերուհին: Նրանք տեղավորվում են հարմար բազմոցի վրա ու սկսում բամբասել իրենց ընկերուհիների հասցեին. մեկի շրջազգեստը տգեղ է, մյուսի քիթը կարճլիկ է, երրորդը ուղղակի երևակայում է և այլն և այլն:

Ի՞նչ կարելի է ասել այս աղջիկների մասին: Ուղղակի սովորական բամբասողներ են: Իսկ չէի՞ն կարող նրանք ավելի արդյունավետ անցկացնել ժամանակը: Մի՞թե տանտիրուհին չէր կարող մի հետաքրքիր բան մտածել, կամ ընկերուհու հետ զրուցել ավելի կարևոր նյութի մասին:

Այսպես էլ է պատահում:

Ծննդյանդ օրը հյուրեր են եկել քեզ մոտ: Իսկ դու մի անկյուն ես քաշվել ու ամբողջ երեկոն հյուրերից մեկի հետ շախմատ ես խաղում: Մյուս տղաները ձանձրանում են, չգիտեն ինչով զբաղվեն:

Կամ այսպես: Եկել է ընկերդ: Իսկ քո սեղանին դրված է նամականիշների հավաքածուն:

— Կարելի՞ է նայել,— հարցնում է հյուրդ:

— Քաշվիր, ձեռք չտաս,— պատասխանում է «հյուրասեր» տանտերը և դեռ արմունկով էլ հրում ընկերոջը:

Դու երևի բոլորովին էլ չէիր ուզում վիրավորել բարեկամներիդ, բայց նրանք նեղացան քեզնից: Հիշիր. ծննդյանդ օրը հյուրերդ, չգիտես ինչու, շատ շուտ հեռացան, իսկ ընկերդ այլևս չէր խնդրում ցույց տալ նամականիշները և ուղղակի դադարեց քեզ այցելել: Իսկ ինչո՞ւ: Որովհետև դու վատ ես ընդունել հյուրերին: Դու խախտել ես հյուրասիրության օրենքը, որը պետք է իմանան ու հասկանան բոլորը:

Ձեր տուն է եկել ընկերդ: Նա քո հյուրն է: Ընդունիր նրան սրտաբաց: Փողոցում քեզ է մոտենում մի անծանոթ ու հարցնում, թե ինչպես կարելի է գնալ այսինչ փողոցը: Ուղեկցիր նրան: Նա նորեկ է, նշանակում է հյուր է մեր քաղաքում, քո հյուրն է.

Ամեն տարի մեր գեղեցիկ Երևանը և ռեսպուբլիկայի բազմաթիվ տեսարժան վայրերն են այցելում հազարավոր հյուրեր և տուրիստներ՝ ոչ միայն Սովետական Միության, այլև աշխարհի բոլոր ծայրերից: Նրանք մեր մայրաքաղաքի, մեր ռեսպուբլիկայի հյուրերն են, քո հյուրերը: Ընդունիր նրանց ինչպես պահանջում է հյուրասիրության օրենքը:



1. Երբ քեզ մոտ հյուր է գալիս, ընդունիր նրան սիրալիր:

2. Տանտերը առաջինն է սեղան նստում, բայց նա չպետք է սկսի ուտել, մինչև որ հյուրերը չսկսեն:

3. Երբ տանտերը վերջացնում է ուտելը, հյուրերը կարող են կարծել, որ իրենք էլ պետք է վերջացնեն: Դրա համար էլ տանտերը ուտելիս չպետք է շտապի:

4. Հյուրասիրիր համառորեն, բայց ոչ ձանձրացնելու չափ:

5. Եթե հյուրը բաժակ կամ մի այլ իր է կոտրել, ցույց մի տուր, որ ափսոսում ես. հյուրն առանց այն էլ անհարմար է զգում:

6. Եթե հյուրերիդ մեջ կա մեկը, որն առաջին անգամն է լինում ձեր տանը, նրան հատուկ ուշադրություն դարձրու:

7. Երկու հոգու ծանոթացնելիս ասում են. «Թույլ տվեք ձեզ ծանոթացնել»: Միշտ կրտսերին են ներկայացնում մեծին, օրինակ, «Ծանոթացիր, մայրիկ, իմ ընկեր Գագիկն է»:

8. Եթե դու երգել կամ նվագել գիտես, մի՛ հրաժարվիր, երբ քեզ խնդրում են:

9. Քո մասին քիչ խոսիր: Ուշադիր եղիր հյուրի՝ պատմածին:

10. Եթե տրամադրությունդ ինչ-որ պատճառով ընկած է, աշխատիր հյուրերը այդ բանը չնկատեն:

# *Կարդա այս գիրքը*

## «ԺՅՈՒԼ ՎԵՌՆ»

Ձեզնից շատերին ծանոթ չէ Ժյուլ Վեռնի կյանքը: Սիրելի գրողի կյանքի մասին ձեզ շատ բան կարող է պատմել Լեոնիդ Բորիսովի «Ժյուլ Վեռն» վեպը, որ վերջերս լույս է ընծայվել Հայպետհրատի կողմից:

Ժյուլին ուսանող ժամանակ հաջողվում է ծանոթանալ ֆրանսիական խոշոր ռեալիստ Վիկտոր Հյուգոյի հետ: Նա միշտ սիրում ու պաշտում է Հյուգոյին և աշխատում իր ստեղծագործությունների մեջ իրականացնել այն, ինչ քարոզում էր Հյուգոն, ինչը կարող էր օգուտ բերել հասարակ ժողովրդին: Մինչ այդ նա ծանոթացել էր Ալեքսանդր Դյումային, որի հետ նրա հանդիպումները շատ հետաքրքիր են նկարագրված գրքում: Ժյուլ Վեռնը երկար ստեղծագործական ուղի է անցել: Մինչև գիտա-ֆանտաստիկ վեպերին անցնելը, նա երկար ժամանակ որոնումների մեջ է եղել: Գոյությունը պահպանելու համար նա ստիպված էր ենթարկվել հրատարակիչների ու թատերասերների բոլոր պահանջներին և գրել պիեսներ ու պատմվածքներ: Այդ բոլորին զուգահեռ, նա ուսումնասիրել է աստղաբաշխություն, բժշկություն, ֆիզիկա, մաթեմատիկա, աշխարհագրություն, ընագիտություն, ծովագիտություն և ամենայն համբերությամբ, ժամանակի ընթացքում իր ձեռքով կազմել մի շատ հարուստ քարտարան, որը նրան հետագայում միշտ օգնել է իր վեպերը գրելիս:

Ժյուլ Վեռնի աշխատասիրությունը մի աննման օրինակ կարող է լինել բոլորիս համար:

Նրա հրատարակիչ Հետցելը տարեկան երկու խոշոր վեպ էր պահանջում նրանից, և մեծ գրողն անթերի կատարում էր իր հրատարակչի պահանջը: Նա գրում էր նույնիսկ այն ժամանակ, երբ գրեթե զրկվել էր տեսողությունից: Եվ այդպես, Ժյուլ Վեռնը ստեղծագործել է մինչև կյանքի վերջը, միշտ նույն թափով, նույն ուժով:

Ժյուլը պատանի հասակից եղել է երազող և երազող էր նույնիսկ յոթանասուն տարեկան հասակում: Երբ նրա դպրոցական ընկերուհին եկավ նրան տեսակ-



ցության, արդեն ոչ թե՛ դպրոցական, այլ թե՛ բազմաթիվ թոռնիկներ ունեցող տատիկ, տեսավ, որ չնայած իր հասակին, նույն երազուն պատանին էր:

Հետաքրքիր է նաև, որ մեծ գրողի մահվան բազմաթիվ հայտարարությունների հետ, թերթի մի անկյունում, փոքրիկ, սև շրջանակի մեջ տպագրված էր մի մահազդ, որ վերաբերվում էր այդ նույն ընկերուհուն՝ Ժաննային, որը մահացել էր նույն օրը՝ 1905 թվականի մարտի 24-ին, Ժյուլի հետ միասին:

Երեխաներ, կարդացեք Բորիսովի «Ժյուլ Վեռն» վեպը, դուք շատ բան՝ ունեք այնտեղից սովորելու:

Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ՄԱՆԿԱԿԱՆ ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐԻ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

ՀԼԿԵՄ Կենտկոմի օրգան «Պիոներ» ամսագիրը հայտարարում է մանկական կարճ պատմվածքի մրցանակաբաշխություն:

Մրցանակաբաշխությանը պետք է ներկայացնել այնպիսի պատմըվածքներ, որոնք կարտահայտեն աշխատանքի ազնվացնող բնույթը. գյուղական երեխաների կյանքը, դպրոցի, ընտանիքի, կոմերիտական և պիոներական կազմակերպությունների դերը երեխաների բընավորության ձևավորման գործում, արհեստագործական ուսումնարանների սաների, պատանի բնասերների, գյուտարարների, ծովայինների, օդաչուների, հայրենի երկիրն ուսումնասիրող խմբակների հետաքրքիր առօրյան:

Կարող են ներկայացվել նաև գիտա-ֆանտաստիկական պատմվածքներ, ինչպես նաև երգիծական պատմվածքներ, որոնք կխարազանեն դպրոցում, տանը և հասարակական վայրերում երեխաների կողմից թույլ տրվող հակահասարակական երևույթները: Ցանկալի է, որպեսզի երգիծական պատմվածքներում հանդես գան ամսագրի մշտական հերոսները՝ Պստիկ Խոստիկը և Երկար Մակարը:

Պատմվածքների ծավալը չպետք է անցնի 5—6 մեքենագիր էջից:

## ՍԱՀՄԱՆՎԱԾ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ՄՐՑԱՆԱԿՆԵՐԸ

Մեկ առաջին մրցանակ 3000 ռուբլի գումարով.
Երկու երկրորդ մրցանակ՝ 2000 ռուբլի գումարով.
Երեք երրորդ մրցանակ՝ 1000 ռուբլի գումարով
և հինգ խրախուսական մրցանակ:

Մրցանակաբաշխությունն անց է կացվում փակ: Նյութերը պետք է ուղարկել ծածկանունով (դևիզ), մաքուր մեքենագրված, երկու օրինակից. իսկ հեղինակի իսկական ազգանունը, ծածկանունը և հասցեն՝ առանձին փակ ծրարով:

Ժյուրիի կողմից մրցանակի արժանացած գործերը կտպագրվեն ամսագրում և, անկախ շահած մրցանակից, հեղինակին հոնորար կվճարվի ընդհանուր կարգով:

Այն գործերը, որոնք մրցանակ չեն ստանա, բայց ժյուրիի կողմից հավանության կարժանանան, կտպագրվեն ամսագրում:

Նյութերը ներկայացնելու վերջին ժամկետը սահմանված է մինչև ապրիլի 5-ը:

Նյութերը ներկայացնել հետևյալ հասցեով.

Երևան, Կ. Բանակի փողոց 41, «Պիոներ» ամսագրի խմբագրություն, մրցանակաբաշխության ժյուրիին:

**„ՊԻՈՆԵՐ“ ամսագրի խմբագրական կոլեգիա**

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԶՐԱՑՅԱՆ Խ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕԶԱՆՅԱՆ Ա.:

Գեղ. խմբագիր՝ Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

Տեխ. խմբագիր՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 01804. Պատվեր 58. Տիրաժ 6500: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 18 II 1958 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:

Գինը 2 ռ.



ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ «Կարմիր հեծելազորայինը» Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*






## ԿՐՈՍՎՈՐԴ

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ—1. Քաղաք Գերմանիայում, 2. երաժշտական գործիք, 3. մետաղ, 4. ականավոր պտղաբույծ, 7. հայ գրերի գյուտարարը, 9. Դ. Դեմիրճյանի ստեղծագործություններից, 10. սովետական գրոյսմայստեր, 12. պետություն Մերձավոր Արևելքում, 13. բառագիրք, 18. հայկական բալետ, 19. քաղաք Ավստրալիայում, 21. սովետահայ կոմպոզիտոր, 24. Սիբիրը նվաճող զորապետ, 25. սովետահայ գրող:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ—5. Սովետական նշանավոր գրող, 6. Շիրվանզադեի «Պատվի համար» դրամայի հերոսուհին, 8. Սովետական Միության Մարշալ, 11. կա-



հույք, 14. սպորտային խաղ, 15. սովետական ավիոկոնստրուկտոր, 16. սովետահայ անվանի նկարիչ, 17. քաղաք Ուկրաինայում, 20. «Անահիտ» հեքիաթի հերոսներից, 22. Դնեպրի վտակը, 23. հայկական երաժշտական գործիք, 26. Անդրեյ Բաբանի օպերան, 27. հայ բազավոր, 28. տպարանի աշխատող:

Կազմեց՝ Ֆ. ՏՈՆՈՅԱՆ

## Դասավորեցեք





Այս ութ ուղղանկյուն եռանկյունիները դասավորել այնպես, որ ստացվի քառակուսի:

Առաջարկ Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ



## Մարալն ու Ջեյրանը

Կոլտնտեսությունը երկու նժույգ ուներ՝ «Մարալն» ու «Ջեյրանը»: Նժույգներն այնքան իրար նման էին, որ ոչ ոք չէր կարողանում դրանց տարբերել: Որպեսզի նրանց իրար հետ չշփոթեն, կոլտնտեսականները խուզեցին «Ջեյրանի» պոչը:

Ամառվա շոգ օր էր: Ձիերն արածում էին արոտում: Ճանճերը հանգիստ չէին տալիս նրանց: Երբ երեկոյան նժույգները վերադարձան տուն, կոլտնտեսականները նկատեցին, որ շատ ուտելուց «Մարալի» փորը ուռել էր, իսկ «Ջեյրանը» քաղցած էր մնացել: «Երևի հիվանդ է», մտածեցին կոլտնտեսականները: Բայց մի ծերունի բացատրեց դրա պատճառը:

Իսկ դուք, երեխաներ, կարո՞ղ եք ասել, թե ինչու էր «Ջեյրանը» քիչ կերել:

Ս. ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 1

Լուծեք այս խնդիրները—

1\. I վարիանտ. 1. Ձի d5—f4, Աe5 : f4. 2. d2—d4×
II վարիանտ. 1. . . . , Աe5—d6, 2. Թc1—c7×
III վարիանտ. 1. . . . , Աe5—d4, 2. Թc1—c3×

2\. I վարիանտ. 1. Ձի c5—d3, Աb5—c4, 2. Թd6—c6×
II վարիանտ. 1. . . . . , Աb5—a4, 2. Թd6—c6×
III վարիանտ. 1. . . . . , a5—a4, 2. Թd6—c5×

3\. I վարիանտ. 1. Ձի g5—h3, Աg3 : h3, 2. 0—0, Աh3—g3, 3. Նf1—f3×
II վարիանտ. 1. . . . . , Աg3—g2, 2. Ձիh2—f1+, Աg2 : h1, 3. Փh5—f3×:

Հանելուկներ—Կաղնի, արհեստ, գաղտնիք:

# ՓԱՌՔ ՄԵՐ ԲԱՆԱԿԻՆ

*Խոսք և երաժշտ. ՀՐԱՉՅԱ ՕՀԱՆՅԱՆԻ*

Tempo di marcia

Coda

Անցնում է գունդը ուրախ քայլերգով,
Մեր սիրտը մաքառ լցնում բերկրանքով.
Արևն է ժպտում մեր մարտիկներին,
Մեր հայրենիքի քաջ որդիներին: } կրկ.

Բանակը ծնվեց մարտերի բոցում,
Երբ թշնամին մեր հողն էր խոցում,
Երկիրն էր տնքում թշնամու զարկից,
Եվ գյուղ ու քաղաք այրվում կրակից: } կրկ.

Նա իր առնական առաջին զարկով,
Կարմիր դրոշը պսակեց փառքով,
Ջարդեց, կոտորեց թշնամու զորքին,
Հազա՜ր-հազա՜ր փառք Կարմիր Բանակին: } կրկ.

Մեր Սովետական Բանակը հզոր,
Իր հայրենիքի որդին անվեհեր,
Արթուն հսկում է նա գիշեր ու զոր,
Խաղաղ, բեղմնավոր աշխատանքը մեր: } կրկ.